թիւն շինութեան կաթողիկէին Անւոյ. Կէստներ տայ ընթերցանութիւնս «կաթաղիկոսի» «Կատրանիդէ» «հիմնադրեալ», զորս առ Ալիշանի ոչ տեսանեմք. Կաթաղիկոս անուն, անսովոր ի բարբառ դպրութեան, հասարակեալ երևի առ ժողովրդեան գաւառին Այրարատայ։ Զանուն թագուհւոյն Գագկայ Ա. Շահանշահի աւանդէ մեզ ժամանակակից շինութեան կաթողիկէի, Ասողիկ պատմիչ ա), եթէ նմանահանութիւն արձանագրութեանն չմեղանչէ ճշմարտութեան, պարտ է ապաքէն զԿատրանիդէ գրութիւն Ասողկանն յեղուլ ի Կատրանիդէ։ Ի այլ իմն ուղղագրութիւն անուան թագուհւոյդ, յորջորջելոյ յարձանագրութեանն Տիկորոյ յամին 1008 Կատրանիդէ։ Մնայ արդ ընդ ձեռն լուսատպութեան հաւաստի լինել եթէ ո՞ր յերկոցունց յիշատակարանցդ իցէ հարազատ։

Ընդ այսոցիկ մանրակրկիտ շփոթութեանց զուգորդի եւ թիւրիմացութիւն հաշուոյ թուականաց տարւոյն։ Առ այս շատ լիցի նշանակել աստանաւր զհակասական վերծանութիւն երկոցունց գիտնոց։ Գաղղիացի հայագէտն Վ. Լանգլուա յամին 1852 եգիտ զտապանագիր մի ագուցեալ յորմն եկեղեցւոյն Տարսոնի ի Ներքուստ եւ, նկարեալ զպատկեր նորին, յամին 1854 զառաջինն ած զայն ի լոյս ի Փարիզ։ Ըստ նորին վերծանութեան ամն չժա (1263) է թուական տապանագրոյդ բ), թէպէտ եւ ի նշանաց անտի գրութեան չէ մարթ հաստատել զայդ։ Զնոյն տապանագիր, գոգցես ուրոյն նմանահանեալ անկախ ի գաղղիացի աւրինակէն, դնէ առաջի մեր հմուտն Ալիշան յէջս անդ Սիսուանայ գ), նշանակելով զթուականն չժթ (1270)։ Թուի թէ ոչ մի ի թուականացդ մերձ հասանէ առ ճշմարտութիւնն։ Այլ եթէ ուշի ուշով զննեսցուք զպատկեր տապանագրոյդ, յերկոսին աւրինակսն բացայայտ տեսցուք ընդ պատուանդանաւ մեծի խաչին դրոշմեալ անունս Մլեհ, զոր ոչ Լանգլուա և ոչ Ալիշան չեն ընթերցեալ։ Արդ եթէ զանունդ Մլեհ յաւդեսցուք ընդ բանից յիշատակագրութեանն, որ ի վերայ տապանին, բացայայտ լիցի արդեաւք եթէ զտապանաքարդ խաչազարդ կանգնեալ է Մլեհ, իշխան Ռուբինեանց,

ա) տես՝ Պատմութիւն Ասողկան, Ս. Պետերբ. 1885, էջ 256.

բ) տես՝ *Inscriptions grecques* etc., 27 եւ զտախտակն առանձին ի վերջ կոյս.

գ) տես՝ յէջն 271.

ի յիշատակ եղբաւր իւրոյ Ստեփանէի, հաւր մեծին Լեւոնի, առաջնոյ Թագաւորին Հայոց ի Կիլիկիա, յետ հասանելոյ իւր յաթոռ պայազատութեան հայրենի իշխանութեան։ Աւանդեն պատմիչք եթէ զառիւծն Սեաւ Լերին, զՍտեփանէ, որ ահաբեկեալ դողացուցանէր զհոռոմս խիզախ, վրիժառու վարուք իւրովք, կալան ոսոխքն և «յեռանդեան կաթսայ արկեալ» «խարշեցին ի պղինձն» յամին 1154։ Ընդ անագորոյնս այս դատաստան հոռոմոց զչարեալ Մլեհի, էառ զվրէժ արեան հարազատին իւրոյ «հազարապատիկ յաւելուածով» ա)։ Նոյն այդ Մլեհ իշխան զարդարեալ զտապան եղբաւրն հոյակապ խաչարձանաւն ետ ի պատուանդանի խաչին դրոշմել զիւրն անուն։ Են անվերծանելի մասունք ինչ ի գրութեան տապանիդ, որ ըստ վերջին վերծանութեան Ալիշանայ ունի բանս աւրինակ զայս. «Սուրբ Ստեփանոս. կանգնեցաւ արքայական եւ սուրբ նշանս ի Թվ. ՋԺԹ. ի բարեխաւսութիւն հոգոյն Ստեփանոսի, որ փոխեցաւ ի Քս ի Մեհեկանի Ա». տարբեր են վերջին բանքս յաւրինակին, զոր տուեալ է մեզ Լանգլուա, և չէ ինչ յայտ եթէ ուստի իցէ տարբերութիւնն։ Այլ որպէս եւ իցէ իրն, եթէ արդարեւ Մլեհ իշխանի է կանգնեալ վարձանդ յիշատակի, որպէս մերս է կարծիք, ապա ուրեմն զԹուական նորին մարթ է ուղղել ի ՌԺԹ (1170), որ երկրորդամ է պայազատութեանն Մլեհի։

Այսոցիկ եւ սոցին նման տարակուսանացն նշմարանք բաւեցեն ի համոզել զմիտս մեր եթէ ընդաւրինակութիւնք քարեղէն յիշատակագրութեանցդ, արարեալք ընդ ձեռն բազմաց է որ հմտից եւ է որ համբակաց, եւս եւ վերծանութիւնն նոցին ցայսաւր ժամանակի հանեալն ի հրապարակ գիտութեան, չեն ըստ ամենայնի կատարեալք առ ի տածել առ նոսին վստահութիւն անդրդուելի հաւատոյ։ Եւ այս յայն սակս յատկապէս. զի որպէս ցուցաք, զայն ամենայն ի կատար ածեալ են ըստ մեծի մասին հարցասիրաւղք գործոյն պատահականք եւ անվարժք։

Ժամ է արդ եւ ժամանակ, որպէս կարծեմքս, հնարս հայթայթել ձեռն ի գործ առնելոյ առ ի վերականգնել զԹանգագին էջս

---

ա) տես՝ Վահրամ 209, Սմբատ 98.

քարեղէն գրչութեանցս Հայոց ընդ ձեռն արուեստին լուսատպութեան։ Զայս իսկ գիտեմք իբր միակ անզուգական ուղի անսխալ եւ անկասկածելի փոխանցման արձանագրութեացն ի քարտէս մատենից առ ի փրկել զերծուցանել զայնոսիկ յանխուսափելի կորստենէն, զոր պատրաստեն նոցա բռնութիւնք տարերաց բնութեան եւ ապականիչ ձեռք տգիտաց և յուղկահարաց։

Ի չափել կշռել զսահման ընդարձակութեան եւ զներքին արժանեաց քարեղէն գրչութեանն, որ ի Հայս, դնի աւասիկ առաջի բանասիրաց մերս սոյն ձեռնարկ փանաքի վաստակոց, յորում ի վերջոյ յաւելեալ լինի եւ կազմեալն ի մէնջ ցանկ յատուկ անուանց անձանց եւ տեղեաց յիշատակելոց յարձանագրութիւնս դարուցն անցելոց։ Առ մէն մի անուն նշանակեալ լինի թուական տարւոյ յիշատակութեանն։ Տեսցէ ապաքէն ուշիմ ընթերցաւղն եթէ յորպիսեա՛ց տարերաց յաւրինեալ հիւսի շար յատուկ անուանցն, յորոց մեծագոյն մասն մնային յանյայտութեան, եթէ չէին արձանագրութիւնքդ։ Վասն զի յընդարձակ էջս պատմութեան Հայոց ի դարս դարս ժամանակաց, որպէս ընթեռնումք զայնս ի վաստակս նախնի տարեգրութեանցն, գրեա՛թէ չյիշատակին ամենեւին այդոքիկ անուանք, որք ընդ հայրենի երկնաւ Հայաստան աշխարհին վայելեալ են զարեւ կենաց և թողեալ են յետնոցս յիշատակս գործոց բարեաց։ Արժան իսկ էր ի վեր հանել զի՛ւրաքանչիւրոց նոցին զու՛ստն եւ զո՛րպէսն, սակայն անձուկ շրջան նախաբանիս թելադիր լինի մեզ թողուլ զայդ գործ այլում պահու։

Կ. Կ.

# ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ.


1. Բժշկեան Մ. վ. Ճանապարհորդութիւն ի Լեհաստան և յայլ կողմանս բնակեալս ի հայկազանց սերելոց ի նախնեաց Անի քաղաքին. 1830 Վենետիկ.
2. Շահխաթունեանց Յովհ. եպ. Ստորագրութիւն կաթուղիկէ Էջմիածնի և հինգ գաւառացն Արարատայ. 2 հատոր. 1842 Ս. Էջմիածին.
3. Ջալալեանց Սարգ. վ. Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան. Մասն Ա. 1842. Մասն Բ. 1858 Տփխիս.
4. ա) Մխիթարեանց Աբ. վ. Ճանապարհորդութիւն յԱնի. 1865 Կ. Պօլիս.
   բ) — Պատմութիւն Մենաստանին Հառիճոյ. 1856 Տփխիս.
   գ) — Պատմութիւն Հոռոմոսին եւ տեղագրութիւն Մարմաշէն եւս այլոց ոմանց վանօրէից ի Շիրակ. 1870 Վաղարշապատ.
5. Սարգիսեան Ն. վ. Տեղագրութիւնք ի Փոքր եւ ի Մեծ Հայս. 1864 Վենետիկ.
6. Մանկունի. Այրիվանք կամ Գեղարդայ վանք. 1871 Վաղարշապատ.
7. Սեդրակեան Ար. վ. Հնութիւնք հայրենեաց ի գաւառին Երնջակու. 1872 Վաղարշապատ.
8. ա) Մխիթարեանց Ստ. վ. Ստորագրութիւն... սրբոյն Գեղարդայ. 1873 Վաղարշապատ.
   բ) — Ստորագրութիւն Ս. Գէորգայ ի Մուղնի. 1899 Դուրէժ.
9. Սրուանձտեան Գ. վ. Թորոս աղբար. 2 հատոր. 1879 Կ. Պօլիս.
10. ա) Ալիշան Ղ. վ. Շիրակ. 1881 Վենետիկ.
   բ) — Այրարատ. 1890 անդ.
   գ) — Սիսական. 1893 անդ.

դ) — Նշմարք և Նշխարք Հայաստանի, 3 պրակ. 1870 անդ.
ե) — Սիսուան. 1885 անդ.

11. Բարխուդարեան Մ. եպ. Արցախ. 1895 Բագու.
12. ա) Երզնկեան Ռ. Հնախօսական տեղագրութիւն Հաղբատայ աշխարհահռչակ վանից. 1886 Վաղարշապատ.
բ) — Նկարագրութիւն Սանահնի. տ. Մեղու Հայաստանի, 1860. №№ 1, 2 եւ 3.
13. Միրախորեան Մ. Նկարագրական ուղեւորութիւն ի հայաբնակ գաւառս արեւելեան Տաճկաստանի, 3 մասն. 1884—1885 Կ. Պօլիս.
14. ա) Քաջբերունի (Բժ. Գաբրիէլ Յովհաննիսեան). Ճանապարհորդական նկատողութիւնք. տ. Փորձ 1877, III, էջ 361—1881, IV—VI, էջ 62, Արարատ 1888, III, էջ 161—XII, էջ 788.
բ) — Ճանապարհորդական յիշատակարանք. տ. Արձագանք 1884, № 31, էջ 599, № 42, էջ 611, № 43, էջ 627; 1885, №№ 2, 3, 4.
15. Գեղամեան Յ. Ախլցխայից մինչ Անի. տ. Փորձ 1879, XII—1880, I.
16. Յովհանջանեանց Կ. Շիրակի մի քանի հնութիւնները. Խծկաւնից մենաստանները. տ. Փարոս 1881, տետր Գ, էջք 7—11 ևն.
17. ա) Լալայեան Ե. Ջաւախք. տ. Ազգագր. Հանդէս VII, 1896.
բ) — Վարանդա » » » II, 1897.
գ) — Սիսիան » » » III, 1898.
դ) — Զանգեզուր » » » IV, 1898.
ե) — Գանձակ գաւառ » » » V, VI, 1899 և 1900.
զ) — Բորչալուի գաւառ » » » VII—IX, 1901 և 1902.
18. Յարութիւնեան Ի. Սանահին. տ. Ազգագր. Հանդ. III, 1898.
19. ա) Երզնկեան Գ. ք. կայան բերդ. տ. Ազգագր. Հանդ. III, 1898.
բ) — Շնող և կայծոն բերդեր. տ. Արձագանք 1894.

դ) — *Տուտէորդու գերեզմանը.* տ. Արձագանք 1894.

20. Տեղացի. *Բարձրաքաշ Ս. Գրիգորի վանքը.* տ. Արաքս 1897 [1894—1895], II, էջք 47—49.

21. Գ[արեգին]վ. տ. Արարատ 1898.

22. Աղանեան Գ. ք. *Հնից նորից.* տ. Լումայ 1900 եւ 1904.

23. Ե. Ս. *Սանահին եւ Հաղբատ վանքերը.* տ. Արարատ 1901.

24. Բենսէ. *Բուլանըխ կամ Հարք գաւառ.* տ. Ազգագր. Հանդ. V—VI, 1899 և 1900.

25. Մուրադեան Յ. *Համշէնցի Հայեր.* տ. Ազգագր. Հանդ. IV—V, VI, 1898, 1899, 1900.

26. Էմին. «*Ծաղկաձոր և Կեչառու վանքերը*». տ. Արաքս 1892. I, էջք 17—30.

27. Մխիթար վարդապետ. *Մի քանի արձանագրութիւններ.* տ. Հանդ. Հայագիտութեան. 1903. III.

28. Պատկանեան Ք. պ. *Քիւրքճեանի աշխատասիրած Հայաստանի լուսանկարչական հաւաքածուի հնախօսական արժէքը.* (Թրգմ. ռուս.). տ. Փորձ 1880, X.

29. Քիւրքճեան Յ. «*Հայաստան. աւերակք Անւոյ. յԵրևան. Ժողովածու* 1878 (40 *պատկեր*)». (*լուսատիպ նկարք*) «Arménie. Ruines d'Ani. Erivan» etc.

30. Փափազեան Մ. *Հնութիւնք վանորէից Հայոց* 1889—1892.
   ա) Առաջին գիրք. Ղազախ.
   բ) Երկրորդ գիրք. Գեղարքունիք.
   գ) Երրորդ գիրք. Վայոց ձոր.
   դ) Չորրորդ գիրք. Գողթան գաւառ.
   ե) Հինգերորդ գիրք. Սիւնեաց աշխարհ.
   } Լուսատիպ նկարք.

31. a) Brosset, M. F., *Explications de divers inscriptions géorgiennes, arméniennes et grecques*, avec 11 pl. St. Pétersb. 1839—1840 (Mém. VI ser. T. IV).
   b) — *Note sur les inscriptions arméniennes de Bolghari.* St. Pétersb. 1838 (Bullet. scient., t. III).
   c) — *Voyage archéologique en Transcaucasie. Rapport sur un voyage archéologique dans la Géorgie et dans l'Arménie, executé en 1847—1848.* St. Pétersb. 1850.

d) — *Notice sur la plus ancienne inscription arménienne connue.* Appendice avec I pl. St. Pétersb. 1856 (Bullet. hist.-phil. T. XIV. Mél. Asiat. T. III, 1859).

e) — *De quelques inscriptions arméniennes remarquables au point de vue chronologique.* Avec I pl. St. Pétersb. 1859 (Bullet. T. I. Mél. Asiat. T. III).

f) — *Описаніе монастырей Ахпатскаго и Санагинскаго*, архимандр. Іоанна Крымскаго. Description des monastères arméniens d'Haghbat et de Sanahin, par l'archimandrite Jean de Crimée, avec notes et Appendice, par M. Brosset, Membre de l'Académie. Mémoires de l'Acad., VII sér., t. VI, № 6, СПБ. 1863.

g) — *Les ruines d'Ani, capitale sous les rois Bagratides, de l'Arménie aux X et XI s.* Histoire et description. I. II. St. Pétersb. 1860 — 1861.

h) — *Rapport sur diverses inscriptions, recueillies par MM. Jules Kästner et Ad. Berger.* St. Pétersb. 1864—1868 (Bull. de l'Acad., t. VII; Mél. As., t. V).

32. Langlois, *v. Inscriptions grecques, romaines, byzantines et arméniennes de la Cilicie.* Paris 1854.

33. a) Dubois de Montpereux, F. *Voyage autour du Caucase etc.*, avec un atlas. 6 vol. Paris 1839—1843.

b) — *Lettre à M. Köppen sur quelques inscriptions grecques, arméniennes et géorgiennes.* St. Pétersb. 1838 (St. Petersb. Zeitung, 1838, № 109).

34. a) Ерицовъ, А., *Монастырь Ахпатъ.* } см. Кавк. Старина
b) — *Монастырь Ахтала* } 1872, № 1, 2, 3.

35. Эминъ, Н., *Армянскія надписи въ Карсѣ, Ани и въ окрестностяхъ послѣдняго.* Москва 1881.

Յընթացս ի տիպ արկանելոյ զայս գործ շահաւէտս արարեալ է մեր պէսպէս փոփոխմունս աննշանս ի համառաւտութիւնս բնագրացդ յարձանագրութեանց, այլ և ի ցուցանել զմատեանսն յորոց այդոքիկ ծաղկաքաղ եղեն. ուրինակի աղագաւ՝ յերկոցն Շահխաթունեանի վկայութիւն բերիւր ի ձեռն մատենագիտիդ ըստ թուոց ընդարձակ հատուածոց (§§) ևեթ. բայց մեք կարեւոր վարկաք գոնեա յիջէ անտի 68-դէ ներմուծանել և զիջիցն ցուցմունս։ Իր փոյթ մեր և առ ի ստուգել զցուցակսն յանձն առնուլ ծգունս իմն, զորոց ընդարձակագոյն տեղեկացուսցէ զքեզ՝ ուշիմ վերծանաւղդ, յառաջաբանն խմբագրողիս ի ռուսաց լեզու։

Խմբ.

## Զ. ԴԱՐ.

....Ուրանայ եւ Հոռո... (ե)պիսկոպոսի, եւ Տ... յրոնի Տեկորոյ վանաց երիցու, եւ Մանանայ հազարապետի հիմնարկեցաւ տեղիս ի ձեռն Յոհանու Հայոց կաթողիկոսի և Յոհանու Արշարունեաց յիւր բարեխաւսութիւն և բոլոր ազգիս, և ամուսնի, և որդեկաց, և սիրելեաց, և սրբոյ Սարգսի: Սահակ Կամսարական շինեաց զայս վկայարան: Սարգ. 206. Ալիշան. Շիրակ. 132.

Տեկոր.

## Է. ԴԱՐ.

Քսան ամւոյն աստուածապահ Երակլի Թագաւորի Հրո- 631. ձ.
տից ամսոյն, որ աւր երեսուն էր.. ես.. հայր ...վանից երից՝ հաճոյիւք Աստուծոյ հիմն արկի սուրբ եկեղեցւոյս, և (յերեսնե-)րորդ ամի նոյն Երակլի Թագաւորի յամսեանն Նաւասարդի ...ութ եղեւ կատարումն նոյն գործոյս տեղւոյս շէն... կամաւ ամենայն իրաւք վարդապետութամբ իսրայէլի Գոռաղեցւոյ:

Ս. Յովհաննէս Բագրեւանդայ. Շհխ. 591. Ալիշան. Այր. 529.

Թվ. ՁԵ. խաչիս գծող: Ալիշան. Այր. 243. 636. ձե.

Ս. Գայիանէի վանք.

Քսան և ութն ամւոյ Հերակլի բարեպաշտ Թագաւորի a.
Ներսեհի Շիրակայ և Արշարունեաց տեառն և Թէոփիլոսի (Ա)շարունեաց եպիսկոպոս(ի) ես Գրիգոր Եղուատր և Մարիամ իմ կին շինեցաք զսուրբ եկեղեցիս վասն մեր հոգւոց:

Ալաման. Շհխ. 591. Ալիշան. Շիր. 125.

670. ճժթ. Ի ե թ ամի Կոստանտնի Մարերի ամսոյ որ աւր ժ ե ե
հիմնարկեցաւ սուրբ կաթողիկէս ի ձեռն Գրիգորի Մամիկոնենի
Հայոց իշխանի եւ Հեղինէի նորին զուգակցի ի բարեխաւսութիւն
շինաւղաց զսա Քս Ած։ Մխ. Վ. Հանդ. հյգ. II, 1.

Արուճ.

(Յամի...) որդի Հերակղի բարեյաղթող Թագաւորի (և յիշ-)
խանութեան... ամենագով պատրիկի կուրապաղատ ...իս պարկ...
Հայոց եւ Ասորւոց՝ եւ յեպիսկոպոսութեանն սրբա(սէրի)... ոկի
Թէոփիլոսի՝ եւ ի տանուտէրութեան Ներսեհի Շիրակայ եւ Ար-
շարունեաց տեառն շինեցաւ սուրբ եկեղեցիս... դուլթիւն կամսա-
րականաց եւ Մրենոյ եւ ամենայն... Ալիշ. Այր. 114.

Մրեն.

Քրիստոս Աստուած՝ յիշեա զԿոմիտաս Հայոց կաթողիկոս
շինաւղ սրբոյ Հռիփսիմէի։

Այս Կոմիտաս եկեղեցապան սրբոյ Հսիփսիմէի կոչեցայ յա-
թոռ սրբոյն Գրիգորի՝ շինեցի զտաճար սրբոց վկայիցս։

Ս. Հռիփսիմէի վանք. Արարատ 1898 հոկտ.

Ես Ներսեհ ապոհիպատ պա...ակայ եւ Աշարունեաց տէր
շինեցի զեկեղեցիս յանուն սրբ(ո)յ Աստուածածնին ի բարեխաւ-
սութիւն ինձ եւ Շուշանայ ամուսնոյ իմոյ՝ եւ Հատայ որդւոյ մե-
րոյ։ Ղ. Հն. 379. Ալիշ. Այր. 138.

Թալին.

## Ը. ԴԱՐ.

783. մլբ. ՄԼԲ. Թուականութեան Հայոց ես Ուխտայտուր վանականս եւ
Տոալի եղբայրիկ իմ բերաք զաղբիւրս ՚ի Սարկապանու դաշտէն ՚ի
Թալին. Թէ յիշխանաց ոք խլեսցէ՝ իմ մեղացս պարտական եղիցի։

Թալին. Ալիշ. Այր. 139.

791. մխ. Ջտիրատուր եւ զամուսին իւր Խաթուն յիշեցէք՝ Թվին մխ։

Ամաղա. Գ. Է. 177.

Աստուածահրաման.... իւք եւ քրիստոսակոչ հրաժարմամբ ի սմա է հանգուցեալ ընդ հարս իւր երանելի տէր Արտաւազդ կամսարական, ապուհիւպատ պատրիկ եւ իշխան Հայոց, որդի Հրահատայ պատրկի Շիրակայ եւ ամուսին Արշարունեաց տեառն, Շաւշանայ Մամիկոնենի։ Ալիշ. Շիր. 179.

Նախճաւան.

## Թ. ԴԱՐ.

Կամաւ ամենակալին Աստուծոյ ես տիկնաց տիկին, ամուսին 854. ՅԳ.
Արջուկին, միաբանեցայ ս. Մարիանէիս, եւ ետու զՓարասանց այգւոյն կէսն ի ՅԳ. որպէս գնեցի եւ տվի. սպասաւորք սրբոցս խոստացան ի տարին ը. պատարագ ի տաւնին Ղազարու. կատարիչք աւրհնին յԱստուծոյ։ Շհխ. 401.

Աշտարակ.

Յամս տեառն Թէոդորոսի Գնունեաց եպիսկոպոսի շինեցաւ 864. ՅԺԳ.
Աստուածածին տունս քաւել զԳրիգոր անարժանս։ Ամաց ամ տեառն ՅԺԳ. նաւակատիք ս. եկեղեցւոյս ի յիշատակ եպիսկոպոսիս։

Մաստարա. Շհխ. 378. Ս. Մխ. 28.

Գոհանամ զԱստուծոյ, որ ետ ինձ... ըղձացել... եղ բաւր Գրի- a.
գորի իշխանի... Շհխ. 378.

Մաստարա.

ՅԺԸ. Թուականիս Հայոց յիշխանութեան Աշոտոյ եւ ի տէրու- 869. ՅԺԸ.
թեան Սմբատայ Հայոց սպարապետի Բագրատունւոյ եւ ի կաթողիկոսութեան Զաքարիայի եղեւ կռիւ ընդ Արուճ եւ ընդ Կաւշ եւ ընդ Գաւառն է... ճ... ար Արուճ զԿաւշ եւ զԳաւարին, եւ կամաւ զԿաւշոյ վանականն եւ ի Քրթավաքին ընդ Անկին մին Թանի* վաճառեցին։ Ես Գրիգոր, որդի Վահրամայ, ծառայ Սմբատայ, եկի հրամանաւ Սմբատայ և ես հաւասարեցի զջուրն ընդ Կաւշ և ընդ Արուճ զինչ իւրեանց... [Ալիշ. Յժգ. * Թաժի].

Արուճ. Շհխ. 384. Ալիշ. Այր. 144.

Ես Գրիգոր Ամիր, Ազուանից իշխան, կանգնեցի ս. խաչս աւ- 881. ՅԼ.
գնական հաւատացելոց. որք երկրպագէք ս. նշանիս, յաղաւթս յիշեցէք։

Մազրայ. Ջալ. Է. 111.

890. յլթ. Ի Թվին յլթ[1] ի Թագաւորութեան Սմբատայ, որդւոյ Վասակայ, կանգնեցաւ նշանս ի ձեռն Գրիգորիկա... Ես Գրիգորի որդի, Գէորգ, աստուածային տեսչութեամբ գտի զարձանս բազում աշխատութեամբ, և մեծաւ յուսով եկի ի դուռն եկեղեցւոյս, կանգնեցի զնշան ս. խաչիս իմ զաւակաց արեւշատութեան, որ և աՀեղ[2] գալստեան Որդւոյն Աստուծոյ առեալ զայս ղամբար լուսոյ ընդ առաջ տեսանել զփառս Քրիստոսի. որք ընթեռնուք զգծագիրս ի վէմս քանդակեալ, յիշեցէք և զիս գյոգնամեղս[3]: [Ալիշ. Սիսկ. 1. նլթ. 2. որ յաւուր. 3 գյաւգնամեղս]. Գ·ու. Է. 137. Ալիշ. Սիսկ. 110.

Քեօթանլի.

895. յխդ. Յամին, յորում Թուականն Հայոց յխդ էր, և Ջատիկն ի նաւասարդի դ., ես տէր Յովհաննէս, որ երկրորդ կարգեցայ եպիսկոպոս Սիւնեաց զկնի տեառն Սաղամանի, արարի սկիզբն շինուածոյ եկեղեցւոյս: Ալիշ. Սիսկ. 227.

Տաթև.

Ես Հասան Գնթունի, որդի Խականայ, յաւեժաբար ըղձացեալ փափագմամբ յաւրինել տեղի ապաւինի ի հանդերձեալսն վասն յոգնահամբար և բազմամեղ անձին իմոյ, յաւժարութամբ սրտի իմոյ խորհեցայ շինել զեկեղեցիս զայս, նախաւրինակ վերին Երուսաղեմի ողորմութեան: Ալիշ. Շիր. 15.

Ուղուզլի.

Քրիստոս Աստուած յիշեա զԳրիգոր Գնթունեաց տէր:
Ապարան. Ալիշ. Այր. 248.

## Ժ. ԴԱՐ.

901. յծ. Ինձ Սուփանայ յիշատակարան հաստատեալ հոգեւոր ի Քրիստոս ի քաղաքագեղս Կոլթայ ի կացուածի իմոց նախնեացն խորհրդակցեալ կամաւք Աստուծոյ շինեցի տուն Տեառն... անուանակոչութեամբ սրբուհւոյ Տիրամաւր Աստուածածնին վիմատաշ կոփածոյ քարամբք և ի սմա սենեակս ութ ի վերոյ և ի ներքոյ: Եւ ապա ի սմին սուրբ քաւարանիս կարգեցի քահանայս և զարդարեցի. զԱստուածածնի քահանայքն նախնեաց իմոց և այլ բազում սպասաւորս ազատ արարի յարքունական ծանրութենէ և ի բեկարէ.

և սահմանեցի հողս և ջուրս, և ետու միոյ միոյ քահանայի յիսուն դրամ ի տարւոջ, որ լինին հնգեցիկս, և սահմանեցի չորից քառասունս, և սաղմոս զներդւթեան կանոնն. և զառաւօտուն սաղմոսն. զի որչափ եմ ես ի մարմնի, յաղագս կենացս յաջողման լիցի. և յետ վախճանի կենացս, մեղուցեալ հոգւոյ իմոյ կատարեն։ Եւ յամենայն ամի իւրաքանչիւր ոք ի քահանայիցս չորից քառասունս առնիցեն վասն իմ։ Եւ արդ եթէ ոք ձեռնարկէ յայս և յափշտակել ջանայ... և կամ զքահանայ ի զատ ընկենու, այնպիսայն բարձցի անուն յերկրէ և յիշատակն... Ստ. Օրբ. Պտմ. լէ. Տ՝ հր. 542-546.

Կոթայ (կամ Շողագայ) վանք.

Կամաւն Աստուծոյ ես Սուփան, Սիւնեաց իշխան, շինեցի 901. յժ.
զՄաքենոցաց եկեղեցիս, և անխնայաբար զարդարեցի պատուական սպասուք և աստուածային կտակարանաւք, և ետու զսեփական տեղն մեր ի սա, որ ըստ անուան եկեղեցւոյս Աստուածածին ասի, ամենայն սահմանաւք՝ լերամբ և դաշտիւ, և ետու որս ձկանց, զԲողաշէն, սեղանոյն, և եւթն հարիւր դրամ ի Դեղձանագետոյ զապալէն, երկուհարիւր դրամ ի կաթկայ¹, երեքհարիւր յիսուն յԱնմեռէն, որ լինի ռմծ. դրամ, եւ ետու հինգ կուղպակ² յԱնի, և հինգ³ այգի յԵրեւան, և հինգհարիւր առու այգի ի գիւղաքաղաքն Գառնի, և երկու այգի յԵղեգիս, և զամենայն պէտս սուրբ եղբայրութեանն լցի առատապէս, և փարթամացուցի ներքոյ և արտաքոյ. ետու և ջոլիրս եզանց և ջոկս զուարակաց, և անդեայս և հաւտս ոչխարաց։ Եւ արդ մաղթեմք զամենայն աստուածացելոյս. ուխտիդ պաշտաւնեայսդ, որում Աստուած է միջնորդ, կատարել վասն մեղուցեալ հոգւոյս զերկու քառասունսն տէրունի պատարագ ինձ... Եւ տէր Յովհաննէս Հայոց կաթողիկոսն ի տանէս մի իշխեսցէ դատ կամ փայքար հանել, և մի յիմ որդեաց կամ ի ժառանգաւորաց... Շինեցի և զեկեղեցին ի գիւղաքաղաքին Կոթայ և ի նմա եւթն սենեակ... Եւ զԱստուածածնին քահանայքն ազատ արարաք յամենայն արքունի չարէ, ընդ նոսին և զայլ պաշտաւնեայս եկեղեցւոյ, որք ի քահանայական կարգէ։ [Աւ. 1. կոթկայ. 2. կուղպակնի, 3. է.] Ստ. Օրբ. Պտմ. լը. Ն. Նէշ. Մէհ. 68.

Մաքենոցաց վանք.

903. յծբ. ...Ես Շապուհ Բագրատունի, Հայոց սպարապետ, տերանց տէր, որդի Աշոտոյ Հայոց Թագաւորի, ի ժամանակս Հայոց Թագաւորի մեծին Սմբատայ, հարազատ եղբաւր իմոյ, և վերադիտողի Հայոց հայրապետի տեառն Յովհաննու [1])... վերակացու և տեսուչ առնելով զքոյր իմ Մարիամ Սիւնեաց տիկին, յիմում [2]) իշխանութեան, ի Վանեվանս, տուն Աստուծոյ կանգնեալ վիմատաշ կոփածովք, շատածախ գանձիւք և մեծաջան վաստակովք կատարեալ [3]), ...տուաք ի քեզ, Վանեվանուց վանական հայր Աբրահամ աղաւթել եւ վայելել և որ այլք յետ քո յաջորդեն... Եւ ետու հինգ գեղոց սահման՝ կոթաքարն, Աղաբոյ վանսն, Շաւառնահողն, Գետամէջն, Կթանոցն, Գետավանաց ծովն, երկուհարիւր վաթսուն դրամ ի Կոթաքարէն, հինգհարիւր երեսուն ի Բրտեննեացն, վեց հարիւր վաթսուն յԱղաբոյ վանացն ծովէ, իննհարիւր իննսուն ի Կարբին գետերէն և ի Նաւերէն... ի թուիս Հայոց 352 [Ալ. 1. Յեւանիսի, 2. յիւրում, 3. կանգնեն]

Վանեվան. Ստ. Օրբ. Պտմ. ււ. Նէշ. Սեպհ. 60.

907. յծզ. ...Ես Գրիգոր, Սիւնեաց տէր, որդի Վասակայ, շատածախ գանձիւք գնեցի ի Հագարացեաց... ընդ նմին և նորոգեցի զսա...

Արամօնս. Ղալխ. 44. Նւէշ. Նայր. 289.

910. յծթ. Նախ և առաջին իսկ լեալ էր վանքն Խոտակերաց. և վասն զի աւերեալ էր կրաւնաւորաց ուխտս եւ քաւարանս ի վաղուց հետէ, իսկ ապա տէրն իմ երանելին Աշոտ աշխատութեամբ շինեալ էր զսուրբ եկեղեցիսն, միանգամայն իսկ նորոգապէս զարդարեալ զամենայն շինուածս կրաւնաւորական դասիւք, իսկ եւ իսկ եղեւ տեառն իմ Աշոտոյ ելանել ի մարմնոյ աստի, փոխելով առ հարսն իւր, սահմանեցին որդեակքն մեր զգիւղն Արաստամուղ ի սուրբ ուխտս սահմանաւք իւրեանց. հարքն կերեալ էին (գրեա՞լ էին) վասն երանելի իշխանին Աշոտոյ եւ ինչ Շուշանայ, Սիւնեաց տիկնոջն հոգեաց արձան եւ յիշատակ մեզ, եւ արեւշատութիւն որդեկաց մերոց. եւ եղեւ զի հիմնաշարժ լինելով աւերեցան եկեղեցիքս, եւ տեառն իմոյ Աշոտոյ կենաց հաղորդ կամելով շինել (լինե՞լ), նորոգեալ զյիշատակ նորափոխելոյն առ Քրիստոս, նոր շինեցի սուրբ զեկեղեցիս կրաւնաւորաց շինուածով յանուն

սրբուհւոյ եւ միշտ կուսին Մարիամու Աստուածածնի, եւ վասն փրկութեան երանելի տեառն իմոյ Աշոտոյ, Սիւնեաց իշխանի, եւ իմոյ մեղուցեալ հոգւոյ, եւ որդւոց մերոց Սմբատայ եւ այլոցն երկարաձգած կենաց եւ յաջողման. իբրեւ զնոյն գիւղն Տրաստամուղ ամենայն սահմանաւք նորա, զոր կերեալ էին մինչեւ ցայսաւր ժամանակի, ի ձեռն վանացս առաջնորդիս հաստատեցի անխախուտ պայմանաւ ի սուրբ Աստուածածնիս ի վանս Խոտակերացն մինչեւ յաւիտեանս ժամանակաց կամակցութամբ որդեկաց իմոց: Եւ զայս պայման հաստատեցի ի սուրբ կրաւնաւորանացի աստ ի հինգ եկեղեցիսդ այդ. զոր ես շինեցի, մին եկեղեցիդ, որ է Աստուածածնիդ, տեառն իմոյ Աշոտոյ եւ յիմ անուն լիցի, ի տարին Գ. քառասունք կատարին մեղուցեալ հոգւոց մերոց, Թերեւս գտցուք զողորմութիւն յահեղ ատենին Քրիստոսի. այդ եւ (այլ և՞) Դ. եկեղեցիքդ լիցին որդեկաց մերոց յարեւշատութիւն եւ հոգւոց փրկութիւն եւ ի պէտս վանացս: Արդ մի՛ ոք իշխեսցէ այսմ անսուտ վճռին եւ պայմանին ընդդիմակաց լինիլ եւ խափանող, ապա Թէ ոչ, այնպիսին Յուդայի մատնչի մասնակից լիցի եւ մեղաց մերոց համարս տացէ յաւուր ահեղ ատենին Քրիստոսի: Եւ մեք տէր Յովհաննէս Հայոց կաթուղիկոս մերով եպիսկոպոսաւք եւ տէր Յովհաննէս Սիւնեաց եպիսկոպոս վկայեմք այսմ գրոյ եւ վճռոյ: Գրեցաւ յիշատակ կտակիս այս յծլթ. Թուականիս Հայոց ի կամս ամենակալին Աստուծոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս ամէն:

Քարակոփ վանք. Ջալ. Է. 168.

Կանգնեցաւ խաչս յանուն տեառն Աշոտոյ որդւոյ Սահակայ 925. յհդ.
Սիւնեաց: Ջալ. Է. 137. Ալիշ. Սիս. 110.

Քեօթանլի (խաչքար).

ՅՁ. Թուականիս (ես Եղիշայ՝ երէց եւ նկարիչ) արարի 931. յձ.
առաջնորդութամբ Սարգսի քահանայի, որք կարդայք, Տէր ողորմէ
ասացէ՛ք: Ալիշ. Սիս. 106.

Գնդեվանք.

Ես Սոփիա տիկին, կին Սմբատայ աստուածապահ տեառն Սիւ- 936. յձե.
նեաց, եւ դուստր Գրիգոր Դերենկի, շինեցի զեկեղեցիս ի յիշատակ
հոգւոյ իմոյ եւ յարեւշատութիւն իշխանաց իշխանին Սմբատայ եւ

*որդեկաց մերոց՝ եւ զարդարեցի զսա մեծածախ սպասիւք՝ եւ ետու զերկու գիւղս ի ժառանգութիւն սմա՝ զոր մի՛ ոք իշխեսցէ խախտել կամ հանել ի սուրբ եկեղեցւոյս, ապա թէ ոչ՝ անլուծանելի նզովիւք անիծեալ լիցին յԱստուծոյ և յաստուածազումար սրբոցս։ Մատանի էր անակն Վայոց Ձոր. շինեցի զսա եւ եդի ակն ի վերայ։*

*Ես Սոփի տիկնաց տիկին, Դերանկին դուստր, կին Սմբատայ, որդւոյ Աշոտոյ շինեցի զեկեղեցիս։* - Ալիշ. Սիս. 104.

Գնդեվանք.

951. ն. *Ի Թագաւորութեան Հայոց Դաւթի Բագրատունւոյ յառաջնորդութեան հայր Եսայեայ ես Աբեդնագով կանգնեցի զխաչս...*

Սանահին. Ջալ. Ա. 29.

956. նե. *ՆԵ. ես... նեցի զխուպանս եւ միաւորեալ շինեցի և էտու ի կաթուղիկէ...* Ալիշ. Այր. 67.

Բագարան.

966. նժե. *Յիշատակ է սուրբ խաչս Յովհաննէս Թագաւորին Հայոց եւ կողակից Շուշան տիկնոջն, եւ որդի Աշոտ Թագաւորս բազում զաւրաւք եկի ի սուրբ ուխտս, ետու Շամբա Ջաղացներըն, Երասխի Նաւն, և Աստապատու հողն...* Շահխ. 580. Ալիշ. Սիսկ. 518.

Մաղարթայ վանք.

967. նժզ. *Ջհայր Սուփան կանգնող ս. Նշանիս յաղաւթս յիշեցէք ի Քրիստոս Յիսուս. ՆԺԶ. Թուին շինեցաւ սրահս։*

Գնտեվանք. Ալիշ. Սիսկ. 106.

971. նի. *Յանուն Աստուծոյ ես Խաւսրեւանուշ Հայոց Թագուհի հաստատեալ եմ զՏեկորոյ շարյեատն յեղն կայթ մի [„յեղն կայթ մի“]. արդ մի՛ ոք իշխեսցէ լուծանել ի սուրբ երրորդութենէն...*

Տեկոր. Սարգ. 205. Ալիշ. Շիր. 133.

975. նիդ. *Սահակ երէցս յաղաւթս յիշեցէք։ Թվին ՆԻԴ.*

Արադէս. Ջալ. Բ. 158. Ալիշ. Սիսկ. 144.

981. նլ. *Յանուն Աստուծոյ ի Ն և Լ Թուականութեան Հայոց ի հայրապետութեան Անանէի եւ ի Թագաւորութեան Աշոտոյ որդ... կամ եղեւ յԱստուծոյ Խոսրոա... Հայոց Թագուհի, որ կարգեցի...*

Թալին. Շահխ. 380. Ալիշ. Այր. 141.

Նլ. Թուականին ի կաթողիկոսութեան տեառն Խաչկա եւ ի թագաւորութեանն Սմբատա եւ ի յասպարապետութեան Գրիգաւրի յիշխանութեան Աշոտո, որ երեւ Աշոտ յԱվանէ զջաղացսն եւ զէգին եւ զհողն կողվերձ[1] ի սուրբ եկեղեցիս... [Ալիշ. [1] կովեղձ]. 981. Նլ.

Ղանլ. 386. Ալիշ. Այր. 146.

Կօշ.

Ի Թագաւորութեան Սմբատայ Բագրատունւոյ Շահնշահի կանգնեցաւ.....ս այս... զոր հիմնադրեաց այրն Աստուծոյ հայր սորա. իսկ (յետ) ելից նորա հայր Սողովմոն հարազատ եւ ժառանգ սուրբ ուխտիս աւարտեց... Սարգիս Հոռոմոսի վանաց առաջնորդ... փոխի յաշխարհէ նախ քան զաւարտումն։ Շնորհիւն Աստուծոյ զկնի Է. ամի (փոխ)ման ծնաւղի իմոյ ի ցնձզ. լինելութեան աշխարհի.. ոձդ լուսաւորութեան Հայոց, Նլդ... ի ձեռն Սամէհանի ճարտարապետի աբեղայի. 985. Նլդ.

Ալիշ. Շիր. 169.

Գըղլէֆիլիսէ.

a. Ես Սարգիս ձոն շինեցի զեկեղեցիս եւ ի քրտանց իմոց ետու այլ ընծայ ի սուրբ ուխտս. եւ հայր Համազասպ սահմանեաց, որ ի Սարգսի եւ ի Բագոսի տաւնի ք. աւր պատարագին զՔրիստոս յիմ անունն։

Մխ. Վրդ. Մխբ. 79. Ալիշ. Շիր. 158.

Հառիճայ.

b. ...Ես Հայր Գրիգոր որ Հայաթաղի զակնս դրի, եւ զառուս հանի, եւ տէրունի հրամանաւ զՀայաթաղի հ... րեցի Բիւրականէ

Բիւրական.

Մխթ. Վրդ. Հանդ. Հայագ. II, 2.

Ետու ես Ջուտաս զիմ հայրենի այգին զՀոռոմդեանն, որ ի Մրեան, ի Հոռոմոսի վանս ի Հայր Սողոմոն... 986. Նլե.

Սարգ. 164.

Հոռոմոս.

Յանուն Աստուծոյ ի Թուական Նլզ ես Սմբատ Շահնշահ, որդի Աշոտոյ Շահնշահի, ազատեցի վասն իմ հաւրն հոգւոյն եւ իմ արեւշատութեան եւ մեղաց թողութեան զշալակաւոր բաժէ շնորհիւն Աստուծոյ... 987. Նլզ.

Արուճ.

Ղանլ. 384. Ալիշ. Այր. 144.

989. նլը. Յանուն Աստուծոյ ես Գրիգորիկս ետու...
Տեկոր. Ն.Լէշ. Հ.էր. 133.

991. նխ. „Սիմէաւն հայր եւ Տիրանուն երկց շինեցաք զեկեղեցիս Սմբատայ եւ Գուրգեայ փրկութեան։ „Գ.ալ. ա̃. 79.
Հաղբատ.

992. նխա. Յանուն Աստուծոյ ի Նխա Թիվականին ես Դավիթ Վարդա որդի ետու զիմ այգին զայն, որ ի գետեզերն իմ ձեռաց արկել, ի սուրբ կաթուղիկէ ի ձեռն աստուածապատիւ եւ հոգեւոր տեառն Սահակա. եւ պարտիս եմ ընդեցեալ մինչ ի միւսանգամ գալուստն զքարեկենդանին զուրբաթ աւրն պատարագն յամենայն եկեղեցիս յիմ անուն մատուցանէ, եւ որ ոք ստէ կամ յապիշտակել իմ մեղացս եւ իմ ազգի մեղաց պարտական եղիցի առաջի Աստուծոյ, և յԱստուծոյ դատապարտ եղիցի, եւ մասն եւ բաժին ընդ խաչահանս կրեցէ, իսկ կատարիչ գրոյս աւրհնեալ եղիցին յԱստուծոյ և յամենայն սրբոց։ Ն.Լէշ. Հ.էր. 138.
Մրեն.

a. Եւ ես Սոփի, դուստր մեծին Աշոտոյ Շահնշահի Հայոց եւ Վրաց Թագուհի, տվեալ իմ եւ հաստատեալ զԴավթի զայգին ի սուրբ կաթուղիկէ եւ ի տէր Սահակ եւ ի Նորին աթոռակալս, զոր ինքնս անդարձ էր արարեալ վասն Դավթի հոգւոյն եւ վասն իմ եւ վասն Գագկա Շահանշահի արեւշատութեան. եւ որ ոք յափշտակել ջանայ, յԱստուծոյ բանէն... եալ եղիցին, իսկ հրամանակատարքն աւրհնեալ եղիցին յԱստուծոյ։ Ն.Լէշ. Հ.էր. 138.
Մրեն.

992. նխա. Յանուն Աստուծոյ այս իմ հրամանք են Գագկա Շահիազնշահի. ազատեալ իմ զՄրենոյ կոռն, որ ի Նախճաւանի էր, զմարդոյ եւ զեզին, ի ձեռն խնդրոյ աստուածապատիւ տեառն Սահակայ Արշարունեաց եպիսկոպոսի, որ անմոռաց խնդրէ ի Քրիստոսէ Թողութիւն լինել մեղաց իմոց. արդ աւր ոք ընդիմանա իմ ա(յս) հրամանացս կամ յիմ որդեաց կամ այլ ոք և իցէ, պարտական լիցի մեղաց իմոց եւ իմ ամենայն ազգի եւ սպանման արեանն Քրիստոսի, իսկ կատարիչ գրոյս աւրհն եղիցի ի Քրիստոսէ. սուրբ կա-

*Թողիկէ եւ սուրբ նշանս կնիք գրոյս. Եղաւ առաջնորդ բարոյս (sic) Հարպ Հայոց տանուտէր. վահան քահանայ գծող։*

*Մրեն.* Նշխ. Դ. եր. 138.

*Կամաւք Աստուծոյ ի նխգ թու. ես Շուշան տիկնաց տիկին զուգակից Գրիգորո իշխանի ետու զՄրուանա կուղպակս ի սուրբ Գրիգոր. իսկ որ հակառ գա յիմոց կամ յաւտարաց յժր. իցն նզոված է հոգւով եւ մարմնով։ Յանուն Աստուծոյ կամ եղեւ իմ Շուշանա տիկնաց տիկնոջ, որ ետու զՄրուանա կուղպակս ի սուրբ Գրիգոր. Ճ. դրամ է Սէգայի եւ Ճ. Մրուանա. ժզ. աւր ժամ ի Քր. ☩ Քրիստոս Աստուած յորժամ գաս փառաւք հաւր ի նորոգել զերկիր, ողորմեա Գրիգորո ծառայի քո։* Նշխ. Դ. եր. 52. 994. նխգ.

*Անի.*

*Ի ժամանակս ինքնակալ արքային Դաւթի Անհողինի, Գուրգէնայ որդւոյ, Բագրատունւոյ թագաւորին ես Տիթվասան, որդի Աբասայ արքայի, եւ ամուսինն իմ Ռուսուդան գնեցի իմ հալալ ընչիւքն Ուքանի որդեացէն Անագէթն, Մամխուտն, Բադէնքն, Բերդկայ այգին, որ Ջրանցի արխի տակն է, եւ Ճորթոլանց տունն եւ Աւէտն իւրեանց հայրինիքն գանձագին արարի, եւ ետու իմ սուրբ նշանիս ընծայ եւ այլ արդիւնքս առաջնորդ հայր Սիմէոն եւ միաբանքս սահմանեցին տարին երեք քառասունք կատարեն անխափան...* Շիրնկ. 23. 996. նխե.

*Հաղբատ.*

*Սուրբ Պաւղոս. յամս աստուածապատիւ եւ հոգեւոր տեառն Յովհաննիսի Ամարասա եպիսկոպոսին. եւ պետութեան տեառն Գագիկա Աղուանից իշխանաց իշխանի ես հայր Կիրակոս՝ առաջնորդ սուրբ ուխտի, եղբաւրորդի Կոկոնա.* 997. նխզ.

*Սուրբ Պետրոս. կանգնեցի զխաչս ի փրկութիւն հոգւո իմո եւ ծնողաց իմոց։ Արդ որք երկրպագէք սուրբ նշանիս, զիս յաղաւթս յիշեցէք եւ Աստուած զձեզ յիշեսցէ. Նխզ էր։*

*Պռըւածառ.* Այրր. 91.

*Ի հայրութեան Սիմէաւնի կանգնեցի զսուրբ խաչս յաւգնականութիւն։* Շիրն. 55. a.

*Հաղբատ.*

1000. նխթ. Ի Նխթ. Թվ. եւ ի Թագաւորութեանս տեառն Գագիկայ՝ որդոյ Մուսէի՝ ես Ոսկի՝ դուստր Մուսէի՝ շինեցի տուն Աստուծոյ ի փրկութիւն հոգո իմո եւ ծնողաց իմոց։ Նշյա. 79.

Տումի.

## ԺԱ. ԴԱՐ.

1001. նծ. Ես Աշոտ իշխանաց իշխան, որդի Գէոր... առն քաջի եւ պատերազմողի՝ հաւատարիմ եղեալ տանս Հայոց՝ առի բարձ եւ պատիւ ի Աշոտոյ Շահնշահէ եւ յորդւոց իւրոց՝ տեսի զմայր քաղաքիս եւ... Նորոգեցի Ն̃Ծ ամի պարթեւիս. ի գալ մուս (sic) ամի եհան ինձ հրաւէր ի վերին արքունի... Սարգ. 174.

Ուղուզլի.

1001. նծ. ՆԾ. Թուականութեանն Հայոց ի հայրապետութեան տեառն Սարգսի Հայոց կաթողիկոսի եւ ի Թագաւորութեանն Գագկայ Շահնշահի ես Սահակ հայրապետ... Ն. Մխ. 22.

Մակարայ վանք.

1003. նծբ. Ես Հոնաւոր՝ որդի Մկան իշխանաց իշխանի՝ անժամանակ ելի ի կենաց եւ սուգ մեծ թողի ծնողաց իմոց՝ արդ որ կարդայք՝ զիս յաղաւթս յիշեսջիք։ [Լաւ ՆԾԲ]. Նշղն. 39. Լաւ Ն.ղգ. Հ. VII.

Հաղբատ.

1004. նծգ. Ի հայրութեան Սիմէաւնի ես Ատոմ վերակացու եկեղեցւոյս կանգնեցի զխաչս. ինձ աղաւթս արարէք։ Նշղն. 25.

Հաղբատ.

1005. նծդ. Ի հայրութեան Սիմէաւնի ես Աթանագինէ եւ Փիլաքսոն կանգնեցաք զսուրբ խաչս ի փրկութիւն հոգւոց մերոց եւ ամենայն երկրպագուաց իւրոց եւ յաւգնականութիւն Թագաւորին մերոյ Դաւթի։ Նշղն. 68.

Հաղբատ.

1006. նծե. Ի Թագաւորաթեան Դաւթի ինքնակալի եւ ի հայրութեան Յովսեփայ ես Մեսրոպ կանգնեցի զսուրբ նշանս յուխտիս Հաղբատայ։ Նշղն.

Հաղբատ.

*Տեառն Անանեայ Արշարունեաց եպիսկոպոսին։* 1006. ՆԾԵ

**Խծկօնք.** Ն.Աէշ. Ն.Այր. 113.

*Ի ՆԾԷ Թ. Հայոց † Յանուն Աստուծոյ կամ եղեւ ինձ Կատրա-* 1008. ՆԾԷ.
*նիդէ, Հայոց Թագուհի, դուստր Վասակայ եւ ամուսին Գագկայ. Թո-*
*ղեալ եմ զՏեկորոյ շարյատն վասն Գագկայ Շահնշահի արեւշա-*
*տութեան եւ իմ որդեացն։... Եւ ես Աշոտ Թագաւոր հաստատեցի*
*եւ Թողեալ եմ զհարկն բնովիմք յաւիտենից եւ զԹաստակն վասն իմ*
*արեւշատութեան եւ իմ ծնողաց եւ եղբարց եւ զաւակաց, որ աւր*
*Թ. կ. Հաոց Նկգ էր... ...վասն ս. Սարգսի շինութեան եւ վասն* 1014. ՆԿԳ.
*մեր հոգեացս ազատեցաք զազգ եւ հայր եւ մայր եւ որդիքս...*

**Տեկոր.** Ն.Աէշ. Ղ.էր. 133.

*Ի ՆԾԹ Թուականութեան եւ ի հայրապետութեան տեառն* 1010. ՆԾԹ.
*Սարգսի Հայոց կաթողիկոսի շնորհիւն Աստուծոյ կամ եղեւ ինձ*
*Գագկայ Շահինշահի, որդւոյ Աշոտոյ, Թողուլ զՄաստարայի հար-*
*կին զաւելորդն զռ. եւ ածի եռ. վասն կենաց անձին իմոյ եւ որ-*
*դւոց իմոց, որ չկարէ ոք աւելի քան զայս առնուլ յորդեաց իմոց*
*կամ ի Թոռանց...* Ն. Մ. 28. Ն.Աէշ. Ն.Այր.

**Մաստարայ.**

*Ի ՆԾԺ Հայոց, մԺԹ Թ. Հոռոմոց... ...ի ժամանակս հոգեւոր* a.
*տեառն Սարգսի Հայոց կաթողիկոսի եւ ի մեծափառ Թագաւորու-*
*Թեան Գագկայ Հայոց եւ Վրաց Շահնշահի ես Կատրանիդէ Հայոց*
*Թագուհի, դուստր Վասակայ Սիւնեաց Թագաւորի... հրամանաւ*
*առն իմոյ Գագկայ Շահնշահի շինեցի զսուրբ կաթուղիկէս, զոր*
*հիմնադրեալ մեծին Սմբատայ... զարդարեցի զարդիւք պատուակա-*
*նաւք նըւէրք ինձ ի Քրիստոս եւ զարմից իմ եւ որդւոց Սմբատայ,*
*Աբասայ եւ Աշոտոյ. հրամայեալ եմ ես տէր Սարգիս սպասաւ-*
*որաց եկեղեցւոյս յետ ելից բարեպաշտ Թագուհւոյս զՎարդաւ-*
*արին յիսնեակսն միով քառասնիւ կատարել մինչ ի գալուստն Քրիս-* 1012. ՆԿԱ.
*տոսի... ի ցնլգ ամացն Ադամայ ի ռ և բժ մարմնանալոյ Աստուածն*
*բանի, չաժ ի հաւատալոյ ի Քրիստոս Հայոց գրեցաւ յիշատակա-*
*րանս ի ձեռն իմ Բենէ։* Ղ.կր. 594. Ն.Աէշ. Ղ.էր. 67.

**Անի.**

1011. նկ. Ես Յովհաննէս կանգնեցի զխաչս։ Գ. ալ. Է. 115.

Տաշքեանդ.

1013. նկբ. Ի Թագաւորութեանն Գագկայ եւ ի հայրապետութեան տէր Սարգսի ես Գրիգոր Մագիստրոս վերստին շինեցի զեկեղեցիս յիշատակ ինձ. եւ ծնողացն իմոց. նաեւ ի տէրանցն աշխարհիս գանձագին արարի զվայրս սորա լերամբն եւ դաշտամբն եւ ամենայն կազմութեամբն որ ի սմա քառադէմբ չորս անկեամբ յաջամբ եւ ահեկամբ ի դիմաց եւ ի Թիկանց, եւ տուաք յիշատակ անջնջելի արձանագրով եւ աշխարհակալ Թագաւորի Թղթովն եւ կայսերական կնքովն, հաստատեցաք ձեռագրով եւ հայրապետական նամակաւն, եւ ի նաւակատիս տաճարիս, զոր շինեցաք, ընծայեցաք զհայրենիս մեր սուրբ եկեղեցւոյս, որ է Հայոց Թառ, հանդստարան եւ աւԹեւան անձեռագործ սուրբ պատկերին Յիսուսի Քրիստոսի, որ ի փայտին, խնդրելին Յոհաննու սուրբ Աւետարանչին հրամանաւ մաւր Տեառն մերոյ ս. Աստուածածնի. եւ նորոգեալ հաստատեցաք վերստին ս. ուխտս վերջինս քան զառաջինն. աստ եդաք զվէմն հաւատոյ հիմն ս. եկեղեցւոյ։ Գրիգոր Վահրամ Պիտանին (Ալիշ. պատանին)։

Հաւուցթառոց վանք. Ղ. ահկ. 575. տ. և 1721 Է. Մ. Աէշ. Մ. Այր. 354.

a. Ես Անանիա, առաջնորդ գոլով ս. ուխտիս... զատեցի մեծաւ ջանիւ զհարկ եւ զԹասակ, առի եւ զՔեղարագոմն իւր ամենայն գոյիւ ի ս. ուխտս վասն ապաւինի տեղի լինելոյ ի փախստեան ժամանակի եւ այլ բազում ինչ աւգտի փայտի եւ խոտի... տուող այգմ պարգեւի Գագիկ էր... եւ որդեակք իւր՝ Սմպատ եւ Աբաս եւ Աշոտ։ Սարգ. 164.

Հառամոս.

1015. նկդ. Ի նկդ Թուականութեանս Թորգոմեան ես Վահրամ իշխանաց իշխան, որդի Համզէի, Թողի զՄաստարայի շարիատն վասն Գագկայ Շահնշահի կենդ... Այս գրոյս չունի ոք իշխանուԹիւն ոչ ես ոչ Համզէ եւ ոչ ի մերոց ոք եւ ոչ յիշխանաց։

Մաստարայ. Ղ. ահկ. 378. Մ. Աէշ. Մ. Այր. 136.

a. Այս հանգիստ է Սոփիայ աղախնոյն Քրիստոսի, կնոջն Վահրամայ Պահլաւունւոյ իշխանաց իշխանի, դստերն Տիգրանայ Հա-

յոց մարզպանի տեառն Անձեւացեաց մեծին վասպուրականի, կիսաւրեայ առ Աստուած փոխեցայ եւ Թողի զաւակս իմ տրտում. աղաչեմ յիշեսջիք զիս եւ Աստուած ձեզ ողորմեսցի. ի Թ. Հայոց ՆԿԴ. Ալիշ. Շիր. 149.

Մարմաշէն.

1016. ՆԿԵ. Ես Մուկն, որդի Հոնաւորայ, շնորհիւն Աստուծոյ նոր նորոգեցի զսուրբ կաթուղիկէս, որ աւերեալ ի սաստիկ շարժմանէ. եւ ետու զԱգարակ իմ գանձով գնած, վասն փրկութեան հոգւոյ իմոյ, եւ մեղաց Թողութեան. եւ պարտին ինձ յամենայն տարի զվարդավառին պատարագել անխափան, որ պակասացնել ջանայ, նզովս առցէ յԱստուծոյ։ Գաւ. տ. 68. Նոր. 45.

Հաղբատ.

1017. ՆԿԶ. Թվ. ՆԿԶ Սմբատ, որդի Աշոտոյ, Սիւնեաց իշխանաց իշխան. յաղաւթս յիշեցէք. + Ջգրող ժամացոյցիս յիշեցէք. ես Գրիգոր գրեցի։ Ալիշ. Սիս. 214.

Ս. Յովհաննէս.

Տեառն Յովհաննիսի, Սիւնեաց եպիսկոպոսի է սուրբ նշանս, ի Թուականիս ՆԿԶ կազմեալ։ a. Ալիշ. Սիս. 231.

Տաթև.

1018. ՆԿԷ. ...Ես Թաթուլս Թողեալ եմ զՏեկորոյ հարկն վասն Յէվանէս Թագաւորի եւ իմ որդւոյ արեւշատութեան։ Սարգ. 205.

Տեկոր.

ՆԿԷ Թուականիս ես Մարիամ ետու զիմ գիրքս ի սուրբ Սարգիս։ a. Շահ. 379. Ալիշ. Այր. 141.

Թալին.

1021. ՆՀ. Ես Մատաթէս կանգնեցի (խաչ)։ [ըստ Ալիշ. ՆՀԵ. Թ.] Մարմաշէն. Ա. Մ. 8. Ալիշ. Շիր. 151.

Ես Ապլղարիբ, որդի Գրիգորոյ, ետու զԱրծուերոյնն ի Հաղբատ, զանձագին արարեալ վասն Յովանիսի արեւշատութեան եւ ինձ մեղացս Թողութեան... a. Գաւ. տ. 75 [զԾղերոյնն]. Նոր. 18.

Հաղբատ.

1022. նհա. *Այս է հանգիստ տէր Պետրոսի որ ի Տրապիզոն զգետն ձորոխ արգելեաց առաջի Վասիլ արքային։* Սարգ. 256.

*Վարագ.*

1023. նհբ. *Ես Մակարս անարժան... կանգնեցի խաչս յաւգնականութիւն հոգւոյ իմոյ։* Նշղն. 55.

1024. նհգ. *ՆՀԳ ես Սիմէւոնս կանգնեցի զնշանս բարեխաւսութիւն Գագկայ... իշ..անութեան եւ Հայոց Թագուոյին, ինձ, իմ ծնողաց եւ ամենայն հաւատացելոց ի Քրիստոս։* Նւէշ. Նյր. 545.

*Ջանկլի գիւղ.*

1029. նհը. *Այս է հանգիստ Սենեքերիմ Թագաւորին։*

*Վարագ.* Սարգ. 256.

a. *...Ես Վահրամ իշխանաց իշխան եւ անթիպատ պատրիկ, Գրիգորի իշխանի Հայոց մեծաց, ի ցեղէն Պահլաւունի եւ ի զարմից սրբոյն Գրիգորի, Հայոց լուսաւորչին... հիմնադրեցի զսուրբ եւ զտիեզերական ուխտս Մարմաշէն, սկսեալ նլե Թ. Հայոց յաւուրս Սմբատայ, որդւոյ Աշոտոյ, Հայոց Թագաւորի, մինչև ի ժամանակս Յովհաննիսի, որդւոյ Գագկայ, Հայոց Շահնշահի, առն իմաստնոյ, շինողի եւ խաղաղարարի, եւ ի Թ. Հայոց նհը։ Եւ կատարեցաք մեծաւ ջանիւ եւ բազում ծախիւք ես եւ մայր իմ Շուշիկ, Հայոց տիկնաց տիկին, եւ եղբարք իմ, Վասակ իշխանաց իշխան, որ նահատակեցաւ ի Թուրքաց պատերազմի, եւ Ապլ խարիպ, Հայոց մարզպան, եւ մանուկն Համզէ։ Որք էաք ամենայն տամբ եւ տոհմիւ հաւատարիմք տէրանց մերոց, եւ նահատակեալ ի վերայ տանս Հայոց աշխատութեամբ եւ արեամբ մերով եւ որդւոց մերոց. եւ գանձուց առատութեամբ եւ ամենայն հնարիւք խնդրէաք զխաղաղութիւն աշխարհիս եւ զհաստատութիւն եկեղեցեաց. շինեցաք եւ այլ բազում եկեղեցիս եւ վանորայս, բայց զտեղի հանգստեանս մերոյ առաւել պատուով մեծարեցաք, եւ լիացուցաք ամենայն գոյիւք, լերամբ եւ դաշտաւք. աւանդեցաք ի սա գեղս եւ ագարակս գանձագինս՝ զԲագարանի գեղ եւ զիւր ագարակն, զԳոդլոն եւ զՊորտանգն, զԱրագէծ եւ զԱզատայ, զԱզասմանէն եւ զԸզնկայն, եւ յԱւշականի այգիք եւ երեք ջա-*

ղաց, եւ երկու ջաղաց ի Դողս, ի յԱշտարակի այգի, ի Կարբոյ դաշտի այգի, ի Սերկեւլի այգի, ի Վժան այգի, ի Մրենի այգիք, ի յԱնի տներ եւ կղպականի, եւ զարդարեցաք զսա ամենայն կազմութամբ, եւ կարգեցաք ի ձեռն սուրբ հաւր Երեմիայի, եւ որ զկնի յաջորդեցաւ Սոսթենէս, նորին որդիացեալ....

Մարմաշէն. Ղ. Կթ. 569. Ն. Ալշ. Ղ. Եր. 148. Բժ. 74.

Շնորհիւն աստուծոյ այս հրամանք է իմ տեառն Պետրոսի եւ Սմբատայ Շահնշահի, որ հաստատեայ եպիսկոպոսարան ի Բջնի քաղաքս զս. Աստուածածինս հիմնարկեալ կատարեաց Գրիգոր իշխանաց իշխան, որդի Վասակայ, եւ տուաւ վիճակ ի ս. Աստուածածինս ի Փոշէհանից մինչեւ 'ի Նիգ և Դիւաստն[1].... զաւակս[2] եւ յԱղստեւ. տուաք գաւազան եւ ս. Նշան եւ աթոռ։ Արդ եթէ ոք խափանել ջանայ զաթոռս կամ յայլ տեղիս փոխել կամ զհողն յափշտակել կամ զաւանդ եկեղեցւոյս գողանալ, թէ յեպիսկոպոսաց կամ յիշխանաց, կամ ով որ հակառակի նզովեսցի յաստուծոյ եւ ի մենջ եւ ի յՅԺը. հայրապետաց, արմատաքի ջնջեսցի յիշատակ նորա յերկրէ եւ անլոյծ կապեսցի։ Եւ արդ այս է բնական եւ առաջին սահմանահատ վիճակ եւ աթոռ։ Հաստատեցաք արձանագրով եւ շրջաբերականով զսահմանահատ վիճակի սորա, որ է յարեւելից ի Ծարգետոյ մինչեւ ի գետն Ախուրեան, յԱնւոյ եւ ի հիւսիսային... [Ալիշ... 1 դիւատունս, 2 զաւակս]. 1031. ՆԼ.

Բջնի. Ղ. Կթ. 490. Ն. Ալշ. Ն. Այր. 273.

ՆՁ. Թու ...ես Աբողամր, որդի Վահրամա, իշխանաց իշխանի, ետու զկառնուտի արտն ի սուրբ Առաքելոցս վասն եղբաւր իմ Գրիգորոյ առողջութեան եւ կենացն յերկարութեան։ a.

Անի. Սարգ. 130. Ն. Ալշ. Ղ. Եր. 60.

Յանուն Աստուծոյ. ՆՁԲ. Թուականիս հայոց Տեառն Պետրոսի հայոց կաթողիկոսի եւ ի թագաւորութեան Սմբատայ Շահնշահի, որդւո Գագկայ Շահանշահի, ժամանակի, որ եր որդիացեալ եւ սիրեղի Ճորտ Սարգիս Գ. ից թագաւորաց Հոռոմոց առեալ Գ. ից պատիւ՝ անթիպատ պատրիկ, վեստ եւ դուկ արեւելից. արդ հրամանաւ սոցա կամ եղեւ եղբարց որդոցս Եգդու 1033. ՆՁԲ.

Այլ Հասնա եւ Խատապա տալ զմեր արկեալ եզին, որ ի Գաղկանս յեզրն Երասխա ի վանքս Տեկորս արեւշատութեան շաւի եւ դուկիս մեզ եւ մեր ծնողաց։

Խծկօնք. Սարգ. 208. Ալիշ. Շիր. 126.

1033a. ՆՁԲ. Ի ՆՁԲ. Թ. Հ(այոց) ի Թագաւորութեան Գագկայ եւ ի Հայրապետութեան տեառն Սարգսի ես Գրիգոր Մագիստրոս, որդի Հասանայ, շինեցի զեկեղեցիս ինձ ի բարեխաւսութիւն եւ իմ պատրոնիս եւ իմ որդւոցն...

Կեչառուս. Շահխ. 490. Ալիշ. Այր. 259.

b. Ես Մարիամ աւխազաց եւ Հայոց Թագուհի, դուստր մեծին Սենեքերիմայ եւ Թոռն Գագկայ Հայոց արքայի, որ ետու զՏարուս ի սուրբ եւ ի տիեզերական ուխտս Մարմաշէն առաջնորդութեամբ Հաւր Սոսթենիսի վասն Գագկայ իմ պապոյն մեղաց Թողութեան եւ կատային իմ Հանկանս...

Մարմաշէն. Շահխ. 569. Ալիշ. Շիր. 149. Ինճ. 75.

e. ՆՁԲ. Թ. Ես Հայր Երեմիա, առաջնորդ սուրբ ուխտին Մարմառաշինու, սիրեցի զվարս միայնութան, աւանդեցի զվերակացութիւն ուխտին իմոյ անդրանկին իմում Սոսթենեսի, եւ ես եկեալ բնակեցայ յանապատի աստ, եւ ի տեղւոջս ընկալայ զփոխումն։ արդ աղաչեմ յիշեսջիք ի Քրիստոս։

Յովհաննավանք. Շահխ. 570. Ալիշ. Շիր. 152.

1034. ՆՁԳ. Վահան քահանա Գծող. + ՆՁԳ. Թուականութեանս Հայոց 'ի Հայրապետութեան տեառն Պետրոսի Հայոց կաթողիկոսի 'ի Թագաւորութեանն Յովաննիսի Շահնշահի ես Հայր Մարկոս, որդի Շապհո քահանայի, գնեցի զՄարս...հողն ի Շահնշահէ եռ. դրամ յիմ հալալ ընչից եւ արկի այգի եւ շինեցի հնձան եւ գնեցի x եւ ափնի x հող ի Խորձան... իսաւր որդո ի Գառնովտի եւ հողս ի Դարբնին նոյն տեղն։ Եւ ի հող մի Գանձէփողի եւ հող մի Սուլտանին... ետի եւ Մռեղին տներն Բագրնի եւ ...ց մի Բագրնի եւ ջաղաց մի Մրենի ետու ի ս. կաթողիկէս վասն Շահնշահի հոգւոյն...

Բագարան. Սարգ. 202. Ալիշ. Այր. 66.

*ի ՆԾԳ. Թուխս ես Հաջաջ, որդի Ապլ Հա(սանայ, ի) տղական հասակի ելի յաշխարհէ եւ ոչ տեսի (զվ)այելչութիւն սորա եւ սուգ մեծ (Թ)ողի ծնողաց իմոց. առ Քրիստոս յիշեցէք զիս աղ.* 1034. ՆԾԳ.

Խծկօնք. Ալիշ. Այր. 130.

*ի ՆԾԳ. Թ. ի Թագաւորութեան Սմբատայ Շահնշահի, որդւոյ Գագ-կայ, ես Գրիգոր... Թոռն Զուտասին... (Ստեփ)աննոս յիմ հայրենի...* 1035. ՆԾԳ.

Նախճուան. Ալիշ. Այր. 136.

*ի ՆԾԳ. Թ. ես Ապլղարիպ մարզպան եղի հրովարտակ ի Սմբատա Շահանշահի առ կայսրն Յունաց Միխէլ ի Կոստանդինուպօլիս եւ շատ ջանիւ եւ մեծածախ գանձիւ բերի մասն ի սրբո խաչէն, եւ եկեալ կատարեցի զտաճարս զայս, եւ զնշանն լուսո կանգնեցի ի պսակ հարսինս Քրիստոսի. եւ եդի լուծ սպասաւորաց եկեղեցյս զկիւրակէին աւրն գիշերապաշտաւն առնել մինչեւ ’ի գալուստն Քրիստոսի. եւ քահանայ, որ մեռանի ի սուրբ փրկչիս խ. մի կալցեն յեկեղեցիքդ. եւ եթէ ոք ի քահանայից եկեղեցյս եւ յիմ սպասուցս եւ ի դրենոյս յափշտակէ կամ ծախելով կամ զինչ եւ իցէ պատճառանաւ եւ կամ զագահութեան զհետ երթա եւ զեկեղեցյս մուտքն խորէ եւ ս. փրկչիս ի պէտս ոչ անցուցանէ, ի յԺԸ. հայրապետացն նզովեալ լիցի. եւ որ զԳրիգոր երիցու որդիքս յեկեղեցպանութենէ հանէ, կրկին անիծիցդ պարտական լիցի, իսկ կատարիչ գրիս աւրհնեալ լիցի։ Զ Գէորգ գրիչ յիշեսջիք ի տէր։* a.

Անի. Սարգ. 121. Ալիշ. Այր. 82.

*Յամս... հոգևորն տեառն Պետրոսի հայոց կաթողիկոսի եւ ի Թագաւորութեան Սմբատա, որդւոյ Գագկա Շահնշահի, ’ի ՆԾԵ. Թ. ես Ապլղարիպ մարզպան, որդի Գրիգորո իշխանի եւ Թոռն Ապուղամրի եւ եղբայր Վահրամա եւ Վասակա, շինեցի զսուրբ Փրկիչս ի մայրաքաղաքս յԱնի... եւ գնեցի կուղպականի Ե. եւ ձիթահանք և այգի և հողեար, և ետու ի սուրբ Փրկիչս եւ զարդարեցի ոսկեով եւ արծաթեով եւ ականբք պատուականաւք, եւ ետու աւետարան եւ տաւնական... եւ կանգնեցի մի առ... սուրբ փրկչիս...* 1036. ՆԾԵ.

Անի. Սարգ. 121. Ալիշ. Այր. 82.

1036a. ՆԾԵ. Ի ՆԾԵ. Թ. Թագաւորութեան... Սմբատայ՝ որդւո Գագկա՝ հայոց եւ վրացՇահնշահի՝ կամ եղեւ ինձ տեառն Պետրոսի՝ հայոց կաթողիկոսի՝ տալ զայգին Աշնկի՝ (կամ Մշնկի)՝ որ ի մեր կորդո արկած էր... մարզպանին Ապլղարիպա՝ որդւո Գրիգորո Պահլաւունո վասն առաւել սիրոյն եւ երախտեացն՝ զոր ծառաեալ էր զսուրբ Լուսաւորչի աթոռս. արդ տուաք որմով եւ ծառովք պտղաբերովք եւ անպտղովք եւ խոտադետնովք եւ գ. աւր ջուր ազատ ի խալւէ եւ ի գեղջէ յամենայն՝ հասուց... իսկ նա ընծաեաց յիւր շինեալ եկեղեցիս ի սուրբ փրկիչս բաժակի... արդ եթէ ոք զապարանող՝ զոր շինեալ է Ապլղարիպա առ սուրբ Փրկչիս... եւ կամ զոր ինչ տուեալ է ի պէտս եկեղեցոյդ եւ որոշէ ոք եւ կամ յապարանող բնակի... եւ զեկեղեցւոյդ հոգսդ՝ զորինչ պիտո լինի... ոչ հոգա՝ ի սուրբ Լուսաւորչէն եւ ի Նորին աթոռակալացն մինչեւ ցմեզ նզովեալ լիցի՝ իսկ կատարիչ գրոցս աւրհնեալ լիցի։

Անի. Սարգ. 122. Ն. Ճշ. Տ. էր. 84.

b. †ՆԶԸ. Թվ. հայոց ի (Թագաւորութեան Յիվանէսի Շահանշահի եւ հայրապետութեան տեառն Պետրոսի՝ հայոց վերադիտողի՝ եւ ի տէրութեան Սարգսի՝ արեւելից դուկիս՝ ես Հապ... շահիկս եւ եկե(ղե)ցպանս միաբան եղբայրաւքս Խծկաւնից վանսն Տեկորոյ ջրոյս եւ Ագարակաց ուղելո զինչ առջի Թագաւորու...ն լէլ է դ. աւրս եւ դ. գիշեր Տեկորոյ է եւ գ. աւր գ. գիշեր Ագրկուց հարցի... եւ գիտողս նզովլուք եւ երդնլով աւղորդն այս է... ի գարնմէն ի վեր մինչեւ յաշունն հանապազ գայր ջուրն լէ-րինն անխափան։

Տեկոր. Սարգ. 207. Ն. Ճշ. Տ. էր. 134.

1038. ՆԾԷ. Ի ռոզժ. ըլմպիադի լինելութեան արարածոց մկ. ըլպիադի աստուծոյ մարմնանալոյ եւ ՆԾԷ. Թա. հայոց ես Սմբատ Շահնշահ, որդի Գագկա Շահնշահի՝ ետու զիմ գեղս՝ զՍահառունիս՝ ի մեր հանգստարանս Թագաւորաց՝ ի տիեզերահռչակ վանս Հոռոմոսի... վկայութամբ տէր Պետրոսի՝ հայոց կաթողիկոսի՝ եւ յառաջնորդութեան սուրբ ուխտիս հաւր Սարգսի եւ Գէորգա... եթէ ոք ի մեծաց կամ ի փոքունց՝ ի մերոց կամ յաւտարաց՝ հա-

կառակ կա եւ յափշտակէ զգեղն կամարաւն եւ փնդկաւն, զրկեալ լիցի ի Քրիստոսէ… † Թովմայի է գ.

Հոռոմոս. Սարգ. 164. [ՆՁԵ. ուղղ. ՆՁԷ].

Յանուն Աստուծոյ ի Թուականին ՆՁԷ. (բ)արեպաշտ Թագուհիս 1038a. ՆՁԷ.
դուստր Աբասայ, Սմբատ Շահնշահի կինս, եւ Աշոտո մա(յ)րս, որ ազատեցի զԵրկրվաց Թաստակաս յորդէց յորդիս Սմբատ Շահնշահանի հզաւրի եւ արքաի արեւշատութեան. որ այս գրոյս հակա… ի կամ ի մեծաց կամ ի փոքրա. յժր. հայրապետաց նզովեալ է, բաժին ընդ Յուդա սատուածավաճառին, Սիմ… կահարդին…

Երերուք (Գըղըլգուլէ). Նշխ. Տէր. 171.

Ի ՆՁԷ. Թուականիս հայոց ետու ես Յովաննէս Շահան- b.
շահ, որդի Գագկա Շահանշահի, զիմ այգին, որ ի Կողբ, յիմ եկեղեցիս, ի սուրբ Յովաննէս, զոր շինեցի ի վանս Հոռոմոսի հանդերձ ժամատամբս եւ Ճ. բեւն աղ յամենայն ամի ազատ յամեայն չարէ ի հայրապետութեան տէր Պետրոսի եւ յառաջնորդութեան սուրբ ուխտիս Հայր Յովաննիսի…

Հոռոմոս. Սարգ. 146.

Ի ՆՁԹ. Թուականիս ես Ապլղարիպ, մարզպան հաոց, որդի 1040. ՆՁԹ.
Գրիգորո եւ Թոռն Ապուղամրի, հայոց իշխանաց, Թէպէտ եւ անտես էի ի հաւրէ իմէ յաղագս կրսերութան… շինեցի զայս հանգստարան հաւր իմոյ Գրիգորո, եւ եղբաւր իմոյ Համզէի, եւ քեռ իմոյ Սեդայի. եւ շինեցի սենակ բ. զսուրբ Ստեփաննոս եւ զսուրբ… պայման քահանայիցդ այս է, որ զամէն ուրբաթ ի ս(ուրբ Ստեփ)… ժամն իմ մաւրն, Շուշանա, արասցեն, եւ զշաբաթն իմ հաւրն Գրիգորո, եւ ի սուրբ Քրիստափոր զամէն ուրբաթ իմ քեռն, Սեդաի, եւ զշաբաթն իմ եղբաւրն արնէ Համզէի…

Անի. Սարգ. 135. Նշխ. Տէր. 53.

Ի Ն Ե Ձ Թ. Թ… ի հայրապետութեան տեառն Թէոսկորոսի, հայոց a.
կաթողիկոսի, կամ եղեւ իմ, Սմբատա Շահանշահի, որդո Գանկա, որ ետու ի սուրբ կաթողիկէ ի Թա ա ընծա յաւիտենից զկոստանդեանց այգին յառաջնորդութեան հաւր Ստեփաննոսի…

Թալին. Տաշ. 379.

1041. ՆՂ. + ՆՂ Թուականութեանս հայոց ի հայրապետութեան տ͞ն Պետրոսի եւ Խաչկա հաոց կաթողիկոսաց, այս իմ հրամանքն են, Գագկա Շահանշահի, որդո Աշոտո, ազատեալ եմ զՄրենոյ հարկն, զծուծ եւ մրուր, զկապիճքն...

Մրեն. Սարգ. 197.

a. Ի + Նղ. Թ. ի հայրապետութեան տեառն Պետրոսի, հայոց կաթողիկոսի, եւ թագաւորութեանն Սմբատա, որդւո Գագկայ Շահնշահի, ես Քրիստափոր ...ետու զիմ գանձագին հայրենիքս է. տուն ի սուրբ Փրկիչս ...եւ պարտին քահանայք ս. Փրկչիտ յամէն ամի ի չորս եկեղեցիքդ յեկեղեցին Է. աւր ժամ առնել... արդ՝ եթէ ոք յիմոց կամ աւտարաց ոք... զարձանագրեալդ անփոյթ առնէ եւ իմ տներոյս յափշտակէ, դատապարտեալ եղիցի ի Քրիստոսէ...

Անի. Նշխ. Շիր. 85.

b. ՆՂ. Թ ես Շահիկս եւ իմ որդիս, Վարդս, տուաք զմեր կորդո շինած տունս եւ զբակս ի սուրբ Փրկիչս եւ ի սուրբ Յոհաննէսն...

Անի. Նշխ. Շիր. 85.

1042. ՆՂԱ. Ի Նղա. Թւ ի հայրապետութեանն տեառն Պետրոսի, հայոց կաթողիկոսի, եւ ի թագաւորութեանն Գագկա Շահանշահի, որդւոյ Աշոտո, կամ եղեւ իմ, Գրիգորո Ծաղկանս եւ իմ որդեացս, որ տուի զիմ գանձագին կուղպականին, որ Վասլին փնդկին ընդդէմ է, ի Բգնայրին վանս ի սուրբ Աստուածածինն ի ձեռն առաջնորդի, հաւր Ստեփանոսի, վասն Վասլին արեւշատութեան եւ իւր որդեաց, եւ իմ Գրիգորո ...եւ հայր Ստիփաննոս եւ միաբան եղբարքս կամաւ յանձն առին, որ ամենայն ամի զՊաւղոսի եւ զՊետրոսի տաւնին աւուրն պատարագն յամէն եկեղեցիսդ իմ եղբաւրն, Մուկաթլի, արասցեն եւ յետ վախճանի իմոյ ինձ մատուսցեն...

Բագնայր. Նշխ. Շիր. 114.

a. ՆՂԱ. Թվ... ես տիկնաց տիկին, դուստր Գրգորոյ մագիստրոսին եւ ամուսին Սարգսի, արեւելից վէստիս, թողեալ եմ զՏեկորոյ զպաշդխոտս շահանշահի արեւշատութեան եւ իմ ծնողացս հոգւոյն... Ծառայիկս յաղաւթս յիշեցէք.

Տեկոր. Սարգ. 207. Նշխ. Շիր. 135.

*Թվին Նղբ. ի Թագաւորութեան Սմբատայ, որդւոյ Աշոտոյ,* 1043. Նղբ.
*ես տէր Յովհաննէս շինեցի զսրահս տգնականութեամբ Սմբատայ,*
*որք աղաւթէք, յիշեցէք ի Քրիստոս։ [Գ. աւ. Սմբատայ որդւոյ*
*Քաղաւթելի, յիշեցէք].*

*Տաթև.* Ալիշ. Սիւն. 235. Գաւ. Է. 302.

*Ես Գրիգորի Քամձ որդի կանգնեցի զխաչս։* 1046. Նղե.

*Տաշքեանդ.* Գաւ. Է. 115.

*ՆՂԹ. Թուականութեանս հայոց ես Կորիկէ Թագաւոր սահ-* 1050. Նղթ.
*մցի զհասոյթս վանուցն մեղաց թողութեան եւ արեւշատութեան*
*իմոյ ընդ ձեռամբ Աշոտ մարծպանին։*

*Ս. Սարգիս (Լոռի).* Լալ. Ազգ. հնդ. VII և VIII, 354.

*Ի հինգհարիւրերորդի ամի Թուականութեանս Թորգոմեան ի* 1051. Չ.
*Թագաւորութեան սուրբ եւ ինքնակալ Թագաւորին Կոստանտեա*
*Մաւնումախին բերաւ ոսկի մատանիս, զոր հզաւրին եւ առաքի-*
*նոյն բարեպաշտին Գրիգորո Մագիստռոսին Կիտաւնտին եւ*
*Տուկին Վասպուրականի եւ Տարաւնո, Արշակունոյն եւ Հայկազ-*
*նոյն, մեծաւ աշխատութամբ ազատեալ էր զմեծ եւ զհռչակաւոր*
*եկեղեցիքս իւր եւ ոչ այլ ինչ հայցէ բայց միայն աղաւթս առնել*
*սուրբ եւ ինքնակալ Թագաւորին Կոստանդեայ, ընդ նմին ծա-*
*ռային Քրիստոսի Գրիգորոյ եւ որդւոց իւրոց. եւ յիշատակ կարգեալ*
*յեկեղեցիքս Կեչառուաց. ուր Մագիստռոս կենդանի է, ամենայն*
*շաբաթ աւր զժամն Հասանայ արասցեն անխափան եւ յետ ելիցն*
*Մագիստռոսին արասցեն անխափան։ Արդ որ ոք այսմ վճռի հաս-*
*տատնո խափանել ջանա թէ յառաջնորդաց ոք իցէ կամ յիշ-*
*խանաց կամ 'ի քահանայից, այնպիսին յ և ժը հայրապետացն նզովեալ*
*եղիցի եւ բաժինն ընդ Յուդայի եղիցի եւ ընդ տիրասպան քա-*
*հանայիցն։ Եւ այս գիր մեր է Յովանիսի շնորհիւն Աստուծոյ Բջնո*
*եպիսկոպոսիս եւ սուրբ եւ մեծի հաւր Բարսղիս է. Թէ ոք այս*
*գրոյս խափանել ջանա, այնպիսին նզովս չարաչար ընկալցի 'ի սր-*
*բո Լուսաւորչէն Գրիգորո եւ յամենայն սրբոց եւ ի մէնջ։ Կա-*
*տարիչք գրոյս աւրհնեալ եղիցին։*

*Կեչառուս.* Շահ. 490. Ալիշ. Այր. 260.

1051. Ես Գրիգոր կանգնեցի զխաչս զայս իմ հոգւոյս...
շ. (Ղազանչի) Շահկերտ. Սեպ. 110.

1057. Ի շրջագայութեան տումարի հայկական 'ի թվին յոբելեանց
շզ. հինգհարիւր վեց թուօք ես Գրիգոր մեղապարտ ծառայ Քրիստոսի ողորմութեամբ նորին եպիսկոպոս Սիւնեաց կանգնեցի զկամարքս եւ ի վերայ զեկեղեցիս, շինութիւնս, է եւ որ այլ աշխատութիւն իմ ի տանս եւ արդիւնք. վկայեն եկեղեցիքս. եւ յորժամ աւարտումն եկին ամենայն, կամեցան եղբարք եւ կարգաւորք տանս վարձահատոյց ինձ լինել, եւ խնդրանաւք իմով կարգեցին քառասունք մի, որ յամենայն տարւոջ կատարեն վասն փրկութեան անարժան հոգւոյ իմոյ, որչափ ս. եկեղեցիքս ի հաստատութեան են, իսկ արդ որ զկնի մեր յաջորդէք ի սուրբ աթոռդ հայրապետք եւ կարգաւորք տանս պարտական են այդ քառասնուցդ, որ անխափան կատարեն յամենայն տարւոջ..

Տաթև. Գաւ. Է. 303. Ալիշ. Սիս. 236.

1061. Թուին շժ. կամ եղեւ ինձ հայր Վարդկայ եւ ամենայն եղբայրց
շժ. գրել զյիշատակ վասն Վարդայ, Զաքարէի որդւոյ, որ մեծ յուսով երետ զԲվեայ մարգ, եւ Սիդայի այգին, եւ այլ շատ իրք. եւ մեք գրեցաք, որչափ ի հաստատութեան է եկեղեցիս, զվարդավառին շաբաթն ժե. ժամ...

Ցախացքար. Ալիշ. Սիս. 154.

a. Ի Թուականիս հայոց շժ. ի Թագաւորութեան Կիւրիկէի, որդւոյ Դաւթի արքայի, ի հայրապետութեան տն Դիոսկորոսի ես Շապուհ իշխանաց իշխան, որդի Գարբանիէլի, ի տոհմէ Պահլաւունի յազգէ Արշակունեաց... գնեցի զՌնակայ[3] տափն եւ ետու զնա յաստուածաշէն մայրաքաղաքն Սանահնոյ... [Ցար. 1 Շապուհիկ 2 զԱւրնակայ].

Սանահին. Գաւ. Ա. 28. Ցար. Ալիգ. Տնչ. III, 297.

1063. Ի շժբ. Թուին ի հայրապետութեան տէր Դիոսկորոսի, ի Թա-
շժբ. գաւորութեան Կիւրիկէի եւ Սմբատայ ես Հրանուշ Թագուհի, դուստր Դաւթի արքայի, շինեցի զնշխարատունս եւ զեկեղեցիս, եւ ետու զնորա շէնքն ի Սանահին...

Սանահին. Գաւ. Ա. 32.

Ի Յաքեգական տոհմիս տոմարիս եւ Թվ. հայոց ի շժբ. ամաց 1063a.
շժբ.
ՀՐ…

Մրեն. Ալիշ. Տեղ. 139.

Թվ. շի. կամաւ ամենակալին աստուծոյ ես …Գրիգոր… միաբան եղբարբս լա… զխաչս իշխանութեան… եւ հայրապետութեան… Օհանէսի տէր Ներսէսի ո… աղաւթեցէք։ 1071.
շի.

Դոնավարգ. Այրար. 131.

Թուին շլե. ի Թագաւորութեան Կիւրիկէի հարազատ Սարգսի Գաւթայ Գաւրգիայն նորոգեցաւ ս. Գորգս բարեխաւս հոգւոց մերոց։ 1086.
շլե.

Կորդան. Գաւ. տ. 133. Լաւ. Ազգ. հնդ. VII և VIII, 339.

Ի Թուին շլե. ես Շահանդուխտ, դուստր մեծի արքային Աղուանից Թագաւորին (sic) եւ ամուսին Գրիգոր Թագաւորին, որ է որդի Աշոտի կաւասն, ոչ գոլով մեզ ի միասին ժառանգ ըստ մարմնոյ, ես եւ քոյրս իմ Կատայ շինեցաք զՍուրբ Աստուածածինս փոխարէն զԹացնորա։ Որչափ կենդանի եմ, կատարեն զսուրբ խորհուրդն. եւ յետ այնորիկ զմեզ կցորդ արասցեն… a.

Վահանայ վանք. Ալիշ. Սիս. 296.

Ի Թուին շլե. ես տէր Սարգիս, առաջնորդ սուրբ ուխտիս Հաղբատայ, շինեցի զչըրաղացս եւ արարի ազատաղաց, արկի եւ զայգիս, տնկեցի եւ զդրախտս զանազան մրգաբերօք ի փառս սրբոյ Նշանին եւ ի վայելումն տանս Հաղբատայ. ար դեթէ ոք զսա ի Հաղբատայ հանէ կամ աւերման պատճառ լինի, ի մեծաց կամ ի փոքունց, կամ առաջնորդ, որ սմա շինութանն չջանայ, այնպիսիքն օրոշեալ լիցին յաստուծոյ եւ ընդ որդւոյն կորստեան եղցեն ի խաւարն արտաքին եւ յորդն անքուն. b.

Հաղբատ. Ծրլնկ. 70. Գ. Ծրլնկ. Ազգ. հնդ. III, 325.

Ես տէր Սարգիս, առաջնորդս Հաղբատայ, կանգնեցի զնշանս տէրունական զէն հաւատացելոց եւ պաշտպան Թագաւորաց մերոց՝ Կիւրիկէի, Սմբատայ եւ Դաւթի զարմի սոցա։ 1089.
շլը.

Հաղբատ. Ծրլնկ. 70. Գ. Ծրլնկ. Ազգ. հնդ. III, 325.

*1001 Յանուն աստուծոյ այս իմ գիր է Սոփէ... Շահանշահի հայոց եւ վրաց Թագուհւոյ, Թողելեմ զԱլաման շարյատս վասն իմ հոգոս եւ արեւոս եւ Շահնշահի հոգոն, եւ Գագկայ, եւ իւր որդեացն արեւուն. եթէ ոք հետ մեր յանդգնի եւ առնու, յժր. ից նզովեալ եղիցի, եւ բաժինն ընդ Յուդայի մատնչի եւ ընդ Սիմոնի կախարդի եւ ընդ Գեհեզի բորոտի. եւ սուրբ Անանէ նմա ոսոխ։

Ալամն. Փար. Հայ. 1881 նոյ. տետ. 4. Լ․ւէշ. Տ. էր. 125.

a. Ով հոչակաւոր դու եւ մեծանունդ ի վկայս, սուրբ Գէորգիոս, աւգնեա բարեխաւսութամբ Գագկա Շահայնշահի, շինաւղի զվկայարանս զայս քոյով անուանակոչութամբ ի քոյդ յուսակնեալ բարեխաւսութիւն, զի ընկալցի զողորմութիւն ի Քրիստոսէ աստուծոյ յանվախճան արքայութեանն ընդ ամենայն արդարացեալսն, ապաշաւանաւք հասանել լուսոյ փառաց որդւոյն աստուծոյ ի վերջնում գիշերի ի ծագել մեծի եւ աներեկ առաւաւտին այցելութիւն գտանել առաջի բեմին և անաչառ դատաւորին, աղաչեմք։

Հոռոմոս. ս. Գէորգայ մատուռն. Սարգ. 165. Լ․ւէշ. Տ. էր. 30.

*1006-1013. Աստուած է ի սմա։ Շնորհիւն աստուծոյ ես տէր Անանիա, շնորհիւն աստուծոյ Արշարունեաց եւ Ճակատոց եւ Արայրարտեան (sic) գաւառի եպիսկոպոս, Թէ մեծ շահ է յաստուածային խորհուրդսն յիշել զգնացեալսն, կարգեցի ամ ըստ ամէ անխափան զզատկի մեռելոց աւուրս ժամն յամենայն եկեղեցիսս յանուն առաջնորդաց հարցն սրբոց եկեղեցւոյս կատարել, եւ զայլ աւուրսն մինչեւ ցնոր կիւրակէն ամենայն հանգուցելոց, որ են ի սուրբ ուխտիս, յանուն նոցա, զի մեր միշտ զյիշատակս նոցա ի մտի ունելով եւ կատարելով առաջի զենլոյն Քրիստոսի, նոքա ի մեզ հայեսցին... Արդ ես շնորհելովն աստուծոյ ի ժամանակս իմոյ առաջնորդութեանս կարգեցի. դուք որ զկնի մեր յաջորդէք զպաշտաւնս...

Հոռոմոս. Սարգ. 166. Լ․ւէշ. Տ. էր. 31.

*1031-1033. ...Ես Վահրամ իշխանաց իշխան ետու զիմ որդւոյն, զԱպուխամրի ոգեբաժին եւ գնեցի ր̅. կուղպակ զԼորագոյնին եւ զՈրսաւտին ի Ոշականց ետու ի սուրբ Գրիգորի եւ քան եկեղեցիքս (sic), որ ունին ի տարին ղ̅. քառասունք...

Անի. Սարգ. 135. Լ․ւէշ. Տ. էր. 53.

...Ես Առաւնս մագիստրոս, մեծարեալ ի մեծափառ Թագաւորութեանց ի գեղ զարդու եւ ի տիս մանգութեան իմո, եկի յաբեւելս, ի գեղեցկաշէն բերդս, յԱնի, բարձրացուցի բաւանդակ զպարիսպ սորին կառկառակոյտ արձանաւք եւ հաստահեղոյս ամրութեամբ, եւ ի յիմոց մեծածախ գանձուց ածի ջանիւ ջուր յորդաբուխ ի մէջ ամրոցիս յուրախութիւն եւ ի զովացումն ծարաւեաց: Բերի ոսկի մատանեաւ գիր ազատութեան զինքնակալ ծիրանեծին Թագուհոյն[1] վասն պախտից տանց քաղաքիս եւ Թաստակին, զոր տային ամ յամէ չափ ութից լտերց. այլ եւ ի խնդրո իշխանաւորացս խափանեցի եւ զգիւտ երկուց լտերց, զոր տայր մութսիքն այս ամէն: [Ալիշ. 1 Զոյէ կայսրուհի, ի միջոցս 1045—1054 Թ.] *1045-1054.

Անի. Սարգ. 119. Ալիշ. Շիր. 70.

+Անուամբ Տեառն ամենակալի եւ ողորմութեամբ սուրբ եւ ինքնակալ Թագաւորին Կոստանդեա Դուկի կամ եղեւ իմ Բագրատա մագիստռոսի եւ արեւելից կատապանիս Վխկացոյս, առնել ողորմութիւն մայրաքաղաքին Անւո, յորժամ առին զտանուտրութիւնս Մխիթար իպատոսն, կրտին որդին, եւ Գրիգոր, Լապաստակի որդին, սպաթար կանկլիտատն, եւ Սարգիս Արտաւազայ որդին, սպաթար կանկլիտատն, եւ ազատեցին զվեցկէ կոռ, եւ զսայլի, եւ զկամին, եւ զանգարիոն եւ կատապան ով և լինի, տա սերմ ճ̅. մող եւ ծախք զընծելոցն. զայլն տանուտէրքն առնեն իւրեանց տամբ, որ չհանէ ի յԱնի ոչ ինչ յժ: Եւ գինեւոր Անեցի, եթէ սայլով, ելծէ գրաստով ազատ է: Եւ Անեցի, որ իւրենն մորթելիք գնէ, բաժն ազատ է: Եւ շալակաւոր Անեցի յամէն ցեղ բաժին կէսն ազատ է: Եւ ի կապծին տաին դահեկանին ժ̅. դրամ. այժմ տան ի̅, ի̅ ազատ է: Եւ մսագործի, եթէ պախրէի լինի գլուխ, ելծէ ոչխարի, կէսն տա, կէսն ազատ է: Եւ ի նստոին կարլէն ճ̅. դրամն ազատ է: *1057-1063.

Անի. Սարգ. 120. Ալիշ. Շիր. 70.

Ես Սեդա, տիկնաց տիկին, դուստր մեծին Վասակա, զուգակից Վահրամա իշխանաց իշխանի, որդոյ Աշոտոյ, իշխանաց իշխանի, տասանորդեցի զվաստակս գեղջն իմոյ, Գաղտաի, ընծայե- *1021— ?

*լով ի նք ուխտս Բագնայրիս վասն յիշատակի զաւրականին Քրիստոսի՝ հաւրն իմոյ՝ Վասակայ փոխեցելոյ յաշխարհէս...*

Բագնայր. Սարգ. 188. Նշխ. Շիր. 113.

*1061. *Ես Հայր Վարդիկ՝ առաջնորդ ս. ուխտիս Ցախացքարիս՝ շինեցի զսուրբ կաթողիկէս եւ կանգնեցի զնշան ս. երրորդութեան վասն իմ հոգւոյս փրկութեան՝ թերեւս ողորմութիւն գտից ի յապագային ի տիեզերական հրապարակի ուր բանքն սպառին եւ գործքն թագաւորեն. արդ ով սրբազարդ քահանայք՝ որք զսուրբ պատարագն համարձակ մատուցանէք՝ զիս յաղաւթս յիշեցէք...*

Ցախացքար. Նշխ. Սիս. 154.

*1086. *Վասակ որդի Սմպաթայ. շինեցաւ հրամանաւ թագաւորին Սմպաթայ ի ձեռն Շահանդուխտ թագուհոյ բարեպաշտի [որ տաճկերէն Ամիրփիրի կասուի]:*

Վաղատին. Փոք. Նշխ. Սիս. 521.

## ԺԲ. ԴԱՐ.

1101. շծ. *Շ: Ծ թվականիս ես հայր Յոհանէս բազում աշխատութամբ (սաս)տիկ երդուեալ կոշա տանուտիրաւքս դատաւորն աւագերէցն... նկեւագն թափեցին զԲնաջուր առուն: մ. դահեկանի գրի որ աւագին տան եւ որ...*

Կոշ. Մխ. Վ. Հնտ. Հյգ. II, 3.

1102. շծա. ՇԾԱ *ես Խաչատուրս գրեցի:*

Խօշուն. Նշխ. Շիր. 18.

1121. շհ. *Ի ժամանակս ինքնակալ արքային Դաւթի բարեպաշտի եւ յաղթողի՝ որդւոյ Գէորգեայ՝ որդւոյ Բագրատայ... որ տիրեաց գաւառի եւ ազինս... եղեւ խնամօղ Հաղբատայ եւ Սանահնի... զՀաղբատս ի մթնութենէ աւերութեան ազատեաց՝ գրով եւ վճռով ընծայեաց ի սուրբ եկեղեցիս զայգիս... զգիւղն... եւ ամենայն հողով եւ վիճակովն... գեղեալ կալուածսն ամենայն վերահաստատեաց... Գրեցաւ գիրս յարքեպիսկոպոսութեան... առաջնորդի Հաղբատայ՝ որ է եղբայր Գրիգորի:*

Հաղբատ. Այրր. 32.

Պետրոս քահանայ... կանգնեաց զխաչս... շհբ. զՅեսու գծողս։ 1123. շհբ.
Առաքելոց վ. Սարգ. 232.

Տէր Ղազարա եւ տէր Ստեփանոսի ի Թհ. շհդ. կանգնեցաւ 1112. շհդ.
խաչս եւ նորոգեցաւ ս. Առաքեալքս...
Առաքելոց վ. Սարգ. 232.

Ի Թհ. շձգ. ես տէր Թորոս եւ Գրիգոր եւ Ղուկաս գծ. 1134. շձգ.
Առաքելոց վ. Սարգ. 232.

Ի Թհ. շղգ. կանգնեցաւ խաչս ի բարեխաւսութն Ստեփ. Ճոն- 1144. շղգ.
կանն ննջեցելոյ ի Քրիստոս. յիշեսջիք աղաչեմ զմեղաւոր զԳորգ Ճոնակ։
Առաքելոց վ. Սարգ. 232.

Ի Թհ. շղգ. կանգնեցաւ խաչս ի բարեխաւսութն տն Դաւթի a.
Անյաղթ փիլիսոփայի... յիշ... զԳէորգ Ճոնակս։
Առաքելոց վանք. Սարգ. 232.

Ի շղգ. Թվ. ես Աղիզս՝ մեղուցեալ աղախին Քրիստոսի՝ 1145. շղգ.
աւ(ր)հնեցի զեկեղեցիս՝ զսուրբ Գրիգոր՝ ի յիշատակ որդւո իմո՝ Գրիգորո ի ձեռն հաւր...
Բագնայր. Սարգ. 188.

Ջնասրադին շղգ. a.
Հաղբատ. Նուրն. 38.

Կանգնեցաւ ս. Նշանս ի բարեխաւսութիւն ո. ամի։ 1151. ո.
Սրվեղու վ. Այրար. 340.

Ես տ. Յովհաննէս տնկեցի զայս տնյարկս (sic) մեծաւ աշխատաւթեամբ։ [տ. ոձբ 1233 Թ.] a.
Հաղբատ. Գ.ալ. ա. 80.

Ի հայրապետութեան տ. Ներսիսի կաթողիկոսին ես Ներսէս b.
եպիսկոպոս շինեցի զեկեղեցիս յիշատակ ինձ եւ տ. Սարգսի՝ ծնողաց իմոց։
Դիւթական. Գ.ալ. է. 349.

1151c. *Արձանս այն սեմական է Սոփեստոսի սարկաւագին Ռ. [Երզն. Թուակ. չունի].*

*Հաղբատ.* Լում. 1900, Ա. 250. Արղն. 52.

1152. *Թիւ ոա. ես Արտաւազ եւ Սարգիս շինեցաք զեկեղեցիս ձե-*
ոա.
*ռամբ Յովհաննիսի...*

*Սրվեղու վանք.* Այր. 340.

*[Շնորհիւն աստուծոյ եւ կամակցութեամբ եղբարցս եւ միջնորդութեամբ տէր Գրիգորիսի գրեցաւ յիշատակ եղբաւրս մերոյ Պետրոն Արտաւազայ (պատրոն). միաբան սուրբ ուխտիս սահմանեցաք ի տաւնի Դաւթի եւ Յակոբայ մատուցանել պատարագ ամենայն եկեղեցիքս զկէսն Արդաւազայ, եւ զկէսն ամուսնոյն իւրոյ Աւթային, որ խափանէ դատի ի տեառնէ]։*

*Գօշ Մխիթարայ վանք.* Այր. 351.

1153. *Քրիստոս աստուած յիշեա զՄարիամ եւ զԽուսուդան ի*
ոբ.
*գալստեան քում։ ՌԲ. ես Մարիամ դուստր Կիւրիկէի Թագաւորի, յազգէ Բագրատունի, շինեցի զսուրբ կաթուղիկէս աւգնութեամբ քիեր [քւեր] իմո Խուսուդանա եւ... եղբաւր մերո Աբասա, որք երկրպագէք Քրիստոսի ի սուրբ քաւարանիս յիշեսջիք ի Քրիստոս. զի վասն Նեղութեան տեղ.ոյս շատ աշխատե(ցաք)*

*Քոբայր.* Լում. 1900, Բ. 226. Լալ. Ազգ. Հնդ. VII և VIII, 420.

1153. *Շնորհիւն աստուծոյ ի ոբ. Թու. եղեւ Նորոգումն վերստին ի*
ոբ.
*ձեռն Պաւղոսի, ուստի եւ հաստատեցաք, որ Թէ ոք յեղբարցս փոխի ի Քրիստոս, եւ հայր, որ լինի պարտի երեք քառասուն ժամ եւ ամենայն եղբայր մէկ աւր պատարագ առնէ. եւ որ չառնէ պատարագ, տասն կանոն աղաւթս արասցէ. աբեղային երկու քառասուն. հայրն լաւ մատաղ առնէ...*

*Խծկօնք.* Աւձ. Տէր. 127.

1154. *Շինեցաւ Հնձանեաց մատուռս ի Թվին ոՁ եւ Գ.*
ոգ.
*Շողակաթի վանք.* Տաշ. 333.

1155. *Թվ. ոդ... ես Մարգարիտ, դուստր Ուխտիկայ, կանգնեցի*
ոդ.
*զսուրբ Նշանս ի փրկութիւն հոգւոյն Ջարդմբերին եւ Ջարտա-*

գունին՝ Մխիթարայ եւ կանանին. որք յաղաւթս յիշէք եւ զԱտոմ, որ գործող էր խաչիս։

Բանանց (Հարց հանգիստ). Լու. Ա. Հչգ. հնդ. V, 309.

Ի Թուին ոդ. ի Թագաւորութեան ափխազաց Գաւրգեայ՝ ի հայ- 1155a. ոդ.
րապետութեան հայոց տէր Գրիգորիսի ես Խաչատուր վարդապետս եւ Սուքիաս Նորոգեցաք զսուրբ Գրիգորս հրամանաւ Թագաւորին եւ իւր մեծ իշխանի Սարգսի ամիր սպասալարին զհին եւ նոր կազմութիւնս գրով ետ ի սուրբ Գրիգորս զայգին միջնաշինին Ջրին, զՏեառնխաչ Կոպավանից՝ ի միջին զՔուրդգեղանն, զԱբասաձորն, զՏանձուտն...

Հաղարծին. Գաւ. տ. 135. Ալշ. 367.

Ի ոթ. Թւ. ի Թագաւորութեան Փատլնոյ ի հայրապետու- 1160. ոթ.
թեան տէր Բարսղի ես Աբրահամ շինեցի զբուրջս ի հալալ արդեանց իմոց... եւ զԱռաքեալ վարդապետս յաղաւթս յիշեսջիք։

Անի. Սարգ. 111.

ՈԹ։Ը Ս Մարկոս ծառայս եւ ամուսինն իմ Շուշիկ միաբանեցաք a.
վանաց եւ մեր հոգւոյ բաժին տվաք յեկեղեցիս։

Դսեղ. Գաւ. տ. 109.

Ի ոժ. Թուին ի Թագաւորութեան վրաց Գէորգեայ կանգնեցաւ 1161. ոժ.
սբ. Ամենափրկիչս ի բարեխաւսութիւն հաւատացելոց։

Սանահին. Լու. Ա. Հչգ. հնդ. VII և VIII, 389.

Թւին ոժբ. էր յիշխանութեան Հասանա, որդո Վախտանգա 1163. ոժբ.
եւ ամուսնո նորա, Մամքանա, ես տ. Յոհան, քվերորդի տ. Գրիգորո, եւ Գեորգ, եղբաւրորդի, եւ այլ միաբանք շինեցաք զեկեղեցիքս...

Հաւապտուկ. Ալշ. 182.

Ի Լժհ. ոժա. Թումա վարդապետ հանգուցեալ ի Քրիստոս։ 1162. ոժա.

Առաքելոց վանք. Սարգ. 233.

Յամն... հոգեւոր տեառն Բարսղի, հայոց կաթողիկոսի, եւ յա- 1173. ոիբ.
միրապետութեան բարիանուն սուլդանի որդի ամիր Մահմուտի Թոռն Մանուչէի, յամի ոիբ. Թու. արդ ես Տրդատ քահանա, որդի

Սոսթինիս քահանայի, Թոռն Գէորգայ, աւագ երէցս Արճոյ եւ զուգակից իմ Խուշուշ... շինեցաք վերստին զմեր գանձագին հայրենիքս զսուրբ փրկիչս... եւ նորոգեցաք յառաջին պայծառութիւն, ոչ ունելով զոք աւգնական... ընծայաբեր եղաք ...զզարդս սպասուց ի քառեսին խորանսն... շինեցաք սմա ժամատունս ամարանո եւ ձմերանո եւ ի կեանս մեր պաշտեցաք ի սմա զեկաւորս Ճավաղս հաց. արդ ես Տրդատ երէց եւ լծակից իմ Խուշուշս ի մեր հայրենի ժառանգութեանց ի սպաս պիտոյից հացի եւ գինւոյ տուաք չորս այգի յԱրուճ զՍաղար եւ զՇլէկն եւ զԿովրածն եւ Բլարխաչկայն, եւ երկու տուն եկեղեցւոյն դիմաց, մեծ արտք [1]Ըլխենցն հարիւր կապճով, մին ի Միքէսն ի Ջրփողին, այս է պղպղի... (1. Թերեւս Բեխենցն ըստ Ալիշ.)

Անի. Սարգ. 123. Ալիշ. Շիր. 85.

1174. ոիգ. Ի ոիգ. Թուիս հայոց. ի հայրապետութեան Նահանգիս մերում տն Բարսղի ես Նուաստս Պետրոս երէց եւ իմ եղբաւրդիքս Ջաղատ, Յուսիկս եւ Սիմեոն տուաք զմեր հայրենի այգին. որ ի Փարբի, որ կոչի Խանիկշտէ[2] ի սուրբ եկեղեցիս Հոռոմոսի յառաջնորդութեան Խաչատրոյ... (Ա. Մխ. 1. Ղազար. 2. Խանիկշտին).

Հոռոմոս Սարգ. 148.

1176. ոիե. Ի Թվ. հայոց ոիե. Նորոգեաց դուռն սուրբ եկեղեցւոյս հրամանաւ իշխանաց իշխանին Քրդին եւ ձեռամբ Յոհաննիսի հիւսան...

Սեւան. Շահխ. 521.

1177. ոիզ. Ի Թվ. ոիզ. ես Ստեփանոս Կաւկեա[1] ...ետու զիմ հայրենի հողն զՔարայ Փաւգոց[2]... ի սուրբ ուխտս յառաջնորդութեան հաւր Գրիգորոյ. դ. աւր ժամ ի տարւոջն Ստեփանոսի, որ եւ խառնեցաւ ի Մարեստրոյն[3] մեծաւ աշխատութեամբ. բ. աւր ժամ Սարեմորոյ[4]. գ. աւրն հաւրն ու գ. աւր մաւրն. եւ բ. աւր Սիրիբախտին[5]. (Ս. Մխ. 1. Կուտկեանց. 2. զքարափաւղոց. 3. ի Մարեմոոյն. 4. Մարեմորոյ. 5. Սիրախտին. Ալիշ. 1. Կուրկեա. 3. Մարեմորոյն).

Այրիվանք. Մանկ. 31. Ս. Մխ. 49. Ալիշ. Այր. 343.

*Թուին ուը... ես Արամս, որդի Համազասպայ, յիշեցի զբազում յանցանս իմ եւ եդի զյոյս իմ ի սուրբ Նշանս, եւ եկի կրօնաւորեցայ աստ, եւ ետու զիմ հայրենիք այգին՝ որ առաջի Իկղաձորոյ, ի գրատունս Հաղբատայ յիշատակ հոգւոյ իմոյ. եւ ետուն ինձ երկու ժամարար ի տաւնի սրբոյն Անտոնի... Եւ ես Կոստս իմ հոգւոյս պաշար զիմ այգին յայս գրատունս ետու։* 1179. ուը.

*Ես Սիրամարս զիմ այգին ետու։*

*Եւ ես Սարգիս, որդի Չխին, զիմ այգին ետու. ով հակառակի, զվերոյգրեալ Նզովս առցէ։*

*Հաղբատ.* Նշխ. 49.

*Յամս... Թագաւորին մերոյ Գէորգեայ, որդւոյ Դաւթի ես տէր Բարսեղ առաջնորդ տանս Հաղբատայ հանդերձ վարդապետաւքս ...ի նմանէ եւ ի մեծամեծացս նորա ցուցաք... ընկալաք, եւ զվիճակաց շրջաբերականսն. աստուած ի նոցա կամս զմեր խնդրելին կատարեաց։ Ետուն զգիւղն ...զիւրեանց պապանցն զհրամանսն եւ զհրովարտակսն հաստատեցին ...ըստ որում ոմանք յանօպայ անձանց... նկուն առնելով զնոսա դարձոյց յեկեղեցիս ...զվիճակս գործաւք ...հաստատեսցէ զԹագաւորութիւնն Գէորգեայ... Ի Թուիս ուիթ։* 1180. ուիթ.

*Հաղբատ.* Նշխ. 33.

*Ի Թագաւորութեան Գաւրգեայ եւ առաջնորդութեան վարդապետին Խաչատրոյ ես Գէ[օ]րգ զԱրակին զհողն եւ զարտ տուի սուրբ Գրիգորիս. եւ սոքա ետուն...* 1181. ուլ.

*Հաղարծին.* Գուգ. ա. 133.

*Յամի Կ. երորդի Է. երորդի նորո շրջակայիս ես տէր Գրիգոր շինեցի խորանիկս աստուածաբնակ հրամանաւ Սադորնո մեծի իշխանի վասն յիշատակի ննջեցելոց իւրոց և յաւիտենականութիւն անձին իւրոյ. որք սպասաւորէք ի սմա, զիս զտէր Գրիգոր եւ զծնողս իմ յաղաւթս յիշեսջիք, ընդ նմին և այլ զազգատոհմն:* a.

*Շխմուրատայ վանք.* Այր. 335.

*Ի Թուին հայոց ուլ ի ժամանակս յաղթաւղ Թագաւորին Գէորգեայ եւ յամիրի սպասալարութեան Սարգսի եւ որդւոց իւրոց,* b.

*Ջաքարէի եւ իւանէի, եւ յամիրութեան Վրդին ես Յովհաննէս, առաջնորդ ս. ուխտին շինեցի զերբեմն լեալ զեկեղեցիքս, աւգնութեամբ ամիր Վրդին եւս վարդապետի մեծի Գրիգորի Քրիստոս աստուծոյ (Վ̃ս ա̃յ) եւ զգաւիթս ի հիմանց մեծաւ յուսով. զաշխատակից զեղբայրս եւ զհայր Յոհաննէս, զարժանին յամենայն աւրհնութեան, զի՛ յաւուրս սոցա կրկին ազատեցան եկեղեցիք մեր յամենայն հարկէ, յիշեցէք ի Քրիստոս։*

*Սանահին.* Ցուց. Ձեռ. հնդ. III, 286.

1181 c. ոլ. *ՈԼ. Թուին և իշխանութեան Սմպատա ես Բարսեղ երէց ու Սարգիս եւ այլ եղբայրքս եւ Սանասի երիցո որդիք մեր ժողովրդովս շինեցաք զեկեղեցիս և բերսք զջուրս...*

*Պառաւանոր.* Ղալիշ. 611. Սիս. 180.

d. *Ի Թվ. ոլ. ես տէր Ստեփաննոս ազուանից կաթողիկոս եղէ միաբան սուրբ ուխտիս Այրիվանաց յառաջնորդութեան հաւրն Գրիգորի եւ ետու զԱնդրէի առաքելոյ նշխարն եւ սուրբ նշան եւ ծննդոց Յովհան...*

*Այրիվանք.* Մանկ. 32. Ս. Մխ. 49. Ալիշ. Այր. 344.

1182. ոլա. *...Ես Հասան, որդի Վախտանկայ, տէր Հաթերքու եւ Հանդաբերդու, Խաչենաբերդու եւ Հաւքախաղացին, կացի յաւագութեան ամս խ̃. շատ պատերազմաւ յաղթեցի Թշնամեաց իմոց... եւ եղեն ինձ վեց որդիք, զբերդերս եւ զգաւառս ետու նոցա, եւ ես եկի ի վանս մաւտ իմ եղբայր պարոն տէր Գրիգորէս եւ եղէ կրաւնաւոր եւ բերի զխաչաւքարս ի յԱզուայ [1] շատ աշխատութեամբ եւ բազում հնարիւք... որք ընթեռնոյք զիս յաղաւթս յիշեցէք ոլա Թուիս.[Արց. 1. ի յԱղուայ].*

*Խութայ վանք Դաթէի առաքելոյն.* Ղալիշ. 597. Սիս. 203.

a. *...Ես Մամա Թագուհի, ամուսին Հասանայ, դուստր Կուրիկայ Թագաւորին, կացաք յաւագութեան ամս է [1]. ես եւ այր իմ. եւ Թողեալ զհայրենիքս որդւոց մերոց, եկաք ի վանքս, մաւտ տէր Գրիգորիս եւ որդին մե՛ր համանուն Նորին, եւ ըզգեցաք զձեւ միանձանց. եւ կանգնեցի զխաչս յիշատակ... յաղաւթս յիշեցէք ոլա. Թուիս [Արց. 1. խ̃.].*

*Խութայ վանք.* Ղ. հե. 597. Սիս. 204.

Ես Վախտանկ, որդի Սմբատայ.. եւ ամուսին իմ Նանայ... միա- 1182b.
բանեցաք Դատի վանացս, եւ տուաք... զՁիշայ Ձորին բերդէն մինչ ՈԼԱ.
յայգին խողենակս, զմանանայն... եւ մեծածախ մասամբ խաչ մի,
եւ տէր Գրիգորի...

Խութայ վանք. Ղ҆ Կխ. 597.

Ի Թագաւորութեան վրաց Գէորգէի ես Օրբելեան Իւանէ 1183.
սպասալարս, Թոռն մեծին Իւանէ սպասալարին եւ որդի Սմբատայ ՈԼԲ.
սպասալարին... եկի ուխտ ի Սանահին սուրբ Աստուածածնիս...
առաջնորդ էր Տուտէորդի Գրիգոր եպիսկոպոսն. տեսի... որ մեր
ամենայն գաւառքն թէ քաղաք թէ գիւղք ազատօք եւ շինականօք
յերանելի Թագաւորաց եւ ի նախնեաց մերոց վախմ էր տուած
սուրբ Աստուածածնիս... մեք եւս, նախնեաց մերոց հետեւելով,
մեր ամենայն գաւառքն քաղաքաւք, գիւղիւք, ազատաւք եւ շինա-
կանաւք վերստին վախմ տուաք ս. Աստուածածնիս...

Սանահին. Գ҆ալ. ա. 30.

ՈԼԲ. Թուականութեան հայոց ի հայրապետութեան տեառն a.
Գրիգորոյ ես Հասան, որդի Վասակայ, շինեցի զեկեղեցիս ի
բարեխաւսութիւն։

Վաղահաս. Գ҆ալ. է. 232. Մըց. 192.

Ի ՈԼԳ. Թուիս շինեցաւ բուրջն։ 1184.
ՈԼԳ.

Կարս. Սարգ. 104. Մխէշ. Մայր. 85.

Յամի յորում եղեւ կատարումն արքային վրաց Գուրգէնի, a.
ես Գրիգոր վարդապետ, որդի Տուտայ, Խաչենեցի, որ բնակեալ
ընդ հովանեաւ սրբոյ Աստուածածնիս կանգնեցի զխաչս ի վերայ
հանգստարանի իմոյ, ակն ունելով ելից կենցաղոյս... կանգնեցաւ ի
հայրապետութեան Յովհաննէսի. յորում ամին նորոգեցաւ կաթո-
ղիկէն սուրբ ՚ի Թուին ՈԼԳ։ զՄխիթար կազմիչս յիշեցէք ՚ի Քրիս-
տոս [Հայ. ՈԼԴ.=1185]։

Սանահին. Գ҆ալ. ա. 27. Լալ. Մըգ. Հնդ. VII և VIII, 391.

Ի Թուին հայոց ՈԼԴ. ի յանցեալ ժամանակաց եւ ի կարճել յաւ- 1185.
ուրցս ես Արեւշահ հանդերձ ամուսնաւ իմով կանգնեցաք զնշանս ՈԼԴ.
Քրիստոսի... եւ ետվի զիմ դրամայգին այգին...

Քոբայր. Գ҆ալ. ա. 102. Լոռ. 1900, Ի. 328.

1185 a. ոլդ. Այս է հանգիստ երջանիկ ծերունի սուրբ հաւր Գրիգորի՝ առաջնորդի երկրորդ շինութեան սուրբ ուխտիս՝ որ է ուսուցիչ եւ աւրինակ բարի ամենեցուն. աղաչեմք որք երկրպագէք սրբոյ խաչիս ասացէք. աստուած յիշեսցէ զհայր Գրիգոր յողորմութեան իւրում եւ զգրիչս. եւ դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ՝ ամէն. ի թուին հայոց ոլդ։

Հառիճայ. Ա. Մխբ. 40. Ալշ. Տեր. 163.

b. Ի թուին հայոց ոլդ. ես Մարիամ դուստր Կիւրիկէի արքայի մեծ յուսով շինեցի զտունս աղաւթից ի վերայ հանգստարանի մեր հաւր՝ քուեր իմոյ Ռուսուդանայ՝ եւ մաւր իմոյ Թամարայ՝ եւ ինձ Մարիամու յառաջնորդութեան տեառն Բարսղի արհիեպիսկոպոսի. որ և աւարտեցաւ ի ձեռն սորին։ Արդ որք մտանէք ընդ դրունս սորա եւ երկրպագէք սուրբ Նշանիս՝ յիշեցէք յաղաւթս ձեր զմեզ եւ զնախնի թագաւորքս մեր՝ որք հանգուցեալ են առ դրուն սրբոյ կաթուղիկէիս ի Յիսուս Քրիստոս։

Հաղբատ. Նշն. 21.

1186. ոլե. ՈԼԵ... ես Աշոտ գնեցի զտէրունական այգին յամիրսպասալար Սարգսէ եւ ետու ս. Նշանիս...

Հոռոմայր. Գաւ. տ. 99.

a. Թ. ոլե. ես Խաչգոգս մամքնանոցս (sic) կագնեցի զըրմիսա գիսե բեմբո ի սուրբ կաթողիկէս վասն իմ հոգոյս առաջնորդ ողչին ի սուրբ եկեղեցոյս պարտի ինձ տարին ը. աւր ժամ...

Քոբայր. Լռմ., 1905, Բ. 326.

1187. ոլզ. Ի ոլզ. կատարեցաւ ...մեծն Սարգիս՝ որդի Զաքարէի՝ թոռն աւագ Սարգսի. որդիքս Զաքարէ եւ Իւանէ կանգնեցաք զխաչս... Նշանդ աստուծոյ, բարեխաւս լեր ամիրսպասալար հայոց եւ վրաց Սարգսի։

Սանահին. Գաւ. տ. 28. Լաւ Ալշ. Հնգ. VII և VIII, 391.

a. Ի թուին ոլզ. ես ամիր սպասալար Զաքարէ եւ Իւանէ շինեցաք զեկեղեցիս եւ տուաք զԾէնուիկն սուրբ Նշանիս... երիու աւր զատկին ամիր սպասալար Սարգիսին...

Հոռոմայր. Գաւ. տ. 98.

*...Ես անպիտանս Սարգիս կանգնեցի ի հիմանց զտաճար սրբոյ Աստուածածնիս... ոլէ թուին։* 1188. ոլէ.

*Հաղբատ.* Նշխ. 67.

*Ի թուին ոլը. յառաջնորդութեան տեառն Բարսղի հաւրեղբաւր ես Դաւիթ, որդի Արանին*[1]*, շինեցի զխորանս եւ զեկեղեցիս ի վերայ հանգստարանի հաւր իմոյ եւ քուեր Փուրթուխանին*[2]*։ Արդ՝ աղաչեմ սուրբ եղբայրութիւնդ՝ զաղուհացից շաբաթ աւրն եւ զկիւրակէն իմ մաւրն Վանէի, դստեր Կիւրիկէի թագաւորին եւ իմ քուերն Փուրթուխանայ երկու քառասունք եւ իմ հաւրն Արանին եւ յետ ինձ եւ իմ քուերն եւ մաւրն. ով խափանէ, մեր խղճիս պարտական է առաջի աստուծոյ։ (Գաւ. 1. Վասակայ 2. Փուրթուքնայ).* 1189. ոլը.

*Հաղբատ.* Գաւ. ա. 74. Նշխ. 25.

*Զաքարէ եւ իւանէ, որդիք մեծ Սարգսի, շինեցաք զհանգստարանս... ի թվին հայոց ոլը։* a.

*Սանահին.* Գաւ. ա. 28. Մնգ. հնդ. VII և VIII, 392.

*ՈԽ ...Ես տէր Բարսեղ, որ գնեցի զվանքս յանաւրինաց եւ ետու զցիցքն վանիցս եւ զջուրն, որ իւրեան էր ի հնոց ելեալ, յիշատակ ինձ...* 1191. ոխ.

*Լմբատ.* Գաւ. ա. 221.

*Ի թագաւորութեան վրաց Գորգի յամիրսպասալարութեան Զաքարէի եւ իւանէի, եղբաւրն իւրոյ ՚ի Թ. ոխ. ես Քուրդս Հասան, Համազասպ, Սարգիս, որդիքս Սմբատայ, որդւոյ Համազասպայ մարզպանայ տուաք զՄթնաշէնոյ*[1] *կէսն... ՚ի Սանահին... ընկալաք հայր Յովհաննէս եւ եղբարքս... [Յար. 1. զԹշա կէսն].* a.

*Սանահին.* Գաւ. ա. 18. Յար. Մնգ. հնդ. III, 283.

*Այս արձանագիր է Արտաշրի որդի Վարշրա որդւոյ Ապլ վարդայ ի Թվ. ոխ. ես Արտաշիր... ետու զիմ գանձագին այգին ի սուրբ տաճարս զՄատնիկ...* b.

*Եղուարդ.* Տաշ. 414. Մնէշ. Մայ. 199.

*Ի ոխ. թուին զկնի չորս ամաց առնլոյ զԵրուսաղէմ Սալահադնին սկսեալ եկեղեցիս սուրբ ի Նորս Գետիկ եւ կատարի ամս* c.

*եաւԹն ի խանգար զատկին Յունաց ձեռամբ վարդապետին Մխի-Թարայ ի Հայրութեան Վարդանայ ձեռնտուութեամբ բարեպաշտ իշխանին Վախտանկայ եւ նորին զուգակցին Արզուխաթունին եւ նորին եղբարցն՝ Սմբատայ Վասակայ եւ խորԹն Գրիգորոյ եւ նոցին զաւակացն։ Լիցի նոցա պատարագ յեկեղեցիս ի տաւնի Աստուածածնին գ. աւուրն, բայց զա͠. Հասանայ, հաւրն Վախտանկայ, ա͠. մաւր նոցին, Մամին, և ա͠. հաւրն Արզուխաթունին Քրտին պարեպաշտի անխափան։*

Գօշ ՄխիԹ. վանք. Ղ. Հն. 603. Ն. Շր. 350.

1192. ռխա. *Մեք Հառիճեցիքս հայր Պետրոս եւ այլ եղբարքս սահմանեցաք ի տաւնի տապանակին իմ մատուռն պատարագել զՔրիստոս յանուն Գրիգորոյ փոխանակ արդեանց իւրոց... Թիւ ռխա.*

Հառիճայ. Ղ. Հն. 568. Ն. Մխ. 81. Ն. Ջշ. Ղ. Եր. 159.

1194. ռխգ. *ՌԽԳ. իշխանութեան իւանէի եւ առաջնորդութեան Խաչատուր վարդապետի ես Խալթ, որդի Հարբայ, շինեցի զեկեղեցիս...*

Հաղարծին. Գ. Ալ. Ա. 134.

1195. ռխդ. *Ի ռխդ ...ես Սելամայ նուաստ աղախին Քրիստոսի շինեցի զսուրբ Աստուածածինս, որ խախտեալ էր ի հիմանց վասն մեր հայրենի գերեզմանացս. եւ ինձ ետուն երկու պատարագ զԱւետեաց Աստուածածնին եւ Մինասայ աւրն ի կենդանութեան իմում Դաւթի եւ յետ իմ մահուան ինձ...*

Հաղբատ. Ն. Այր. 67.

a. *Ի Թւ. ռխդ. յառաջին ամի կաԹողիկոսութեան տ͞ն Բարսղի եւ ի տէրութեան վանացս Գրիգորոյ եւ Սմպատա եւ եղբ... ես հայր Պետրոս սուրբ ուխտիւս հաստատեցաք, եԹէ ոք ի միաբանացս փոխի ի Քրիստոս, պատարագ մատուսցուք հաւրն չորս քառասուն (դ. խ.), եւ ամենայն եղբայր մի աւր պատարագ... աշխարհական հաբեղայի երկու քառասուն...*

Հոռոմոս. Ս. Ագ. 150. Ն. Ջշ. Ղ. Եր. 22.

1196. ռխե. *Ի ռխե. Թուականիս ես Գրիգոր վարդապետս, որդի Տուտայ, ետու զսուրբ նշանս լուսոյ կրկին պահարանով երիս մասն... ի սուրբ*

Աստուածածինս Հառիճայու… տուաւ ի ձեռն հաւր Պետրոսի… (Ալիշ. ոխ=1191).

Հառիճայ. Ն. Մխէ. 82. Ղ. Կր. 568. Ն. Եէշ. Ղ. էր. 158.

ի Թուին ոխե. և յառաջնորդութեան հաւր Պետրոսի… ես 1196a. ոխե.
Աստուածատուր ետու զիմ հայրենի այգիս[1], որ յԱրուճ, ի վերին
Թաղն Խաչկանց այգին եւ զընծանն ետու ի սուրբ ուխտս Հառի-
ճայի ի սուրբ Գրիգորս ի սուրբ Աստուածածինս. եւ առաջնորդք
սուրբ ուխտիս խոստացան ինձ ի տարւոյն բ. ժամ զմէկ աւրն
իմ հաւրն Շիկին[2] եւ ա. իմ մաւրն Նվարթին… ի տաւնի սրբոյն
Սարգսի… (Շհխ. 1. զիմ հայրենագին. 2. Նշիկին).

Հառիճայ. Ն. Մխէ. 82. Ղ. Կր. 568. Ն. Եէշ. Ղ. էր. 159.

ՈԽԶ. ԵսԳրիգոր վարդապետս, որդի Տուտայ, ետու յԱստուա- 1197. ոխզ.
ծածինս ութն գիրք, երկու վերացման խաչ մասամբ, երկու վառ
ատլաս, ոսկեգիր հարցնատետր… պարտին… զսուրբ Գրիգորայ
տօնին… երկու շուրջառ այլ տուի։

Սանահին. Գ. աւ. ա. 16.

ի ոխէ. Թւիս ես հայր Մխիթար սատարութեամբ Սարգսի 1198. ոխէ.
կրաւնաւորի …զԱկանց ջուրն, զոր մեր հին Թագաւորացն կարի
յոյժ ջանացեալ եւ ոչ ժամանեցին բերել… մեծ ծախիւք… ածաք
ի Հոռոմոսի վանս… եղեւ այս ի հայրապետութեան տ՟ն Բարսղի
եւ ի տէրութեան վանացս քրիստոսասէր պատրոնացս Գրիգոր
Հեճպին եւ Սմպատա եւ եղբարց իւրեանց եւ ի տէրութեան քա-
ղաքիս եւ բոլոր երկրիս մեծ Հայոց… Զաքարէի եւ Իւանէի…

Հոռոմոս. Սարգ. 143. Ն. Եէշ. Ղ. էր. 21.

ՈԽԷ. Ես …Յովհաննէս ամէն միաբան եղբարցս կամակցու- a.
թեամբ եւ ձեռնտուութեամբ յիմ ծնողաց եւ յիմ եղբարցն… շի-
նեցի զեկեղեցիս յանուն Վասակայ եւ Յուշկանն, Հասանայ եւ
Վաչէի…

Մակարայ վանք. Գ. աւ. ա. 154.

1198b. ոխէ. …Եւ ի ոխէ. Թուին ես Գրիգոր վարդապետ, քուեր որդի պատրոնացն, նոր շինեցի զայգիս եւ կանգնեցի զխաչս յառաջնորդութեան հայր Յովհաննէսի…

Սաղումոր (Սևորդեաց). Գ. Հաւ. տ̃. 80.

1199. ոխը. Ի Թուին ոխը. ես Մխիթար կանգնեցի զխաչս մեծ յուսով ի փրկութիւն հոգւոյ իմոյ…

Հաղբատ. Նշղն. 70.

1200. ոխԹ. Ի Թ. հա. ոխԹ. ես Ապաս, որդի Արտաշրի, մինչդեռ տասն եւ հինգամեայ եւ սրախոխող… սրովն ի սմա վրացւոց[1], յորժամ հասաւ հարուածն Աւշականայ, ետու զՍեւս հողն ի սուրբ Սիոն յեկեղեցիս եւ վանական ամենից ի ձեռն հայր Վարդանայ… (1. Ալիշ. իմայելացւոց).

Օշական. Շահխ. 400. Ալիշ. Այր. 194.

a. Ի Թու. ոխ̃Թ. քրիստոսասէր իշխանաց իշխանքն, Զաքարէ եւ Իւանէ, վերստին դարձոյց (sic) զջուրն Ամառնամատակի եշ. եւ ուրբաԹ ի սուրբ ուխտս. զա̃. աւրն, որ է ուրբաԹու… եւ բնակիչք սորա խոստացան զաւագ խորանն զԱստուածածնին բովանդակ տարին պատարագել ի Քրիստոս յանուն նոցա…

Այրիվանք. Մանկ. 31. Ալիշ. Այր. 343.

*1185. Ես Գրիգոր, առաջնորդ սուրբ ուխտին Հառիճայի, շինեցի զտեղի սննդեան իմոյ ի հարիւրամեայ կործանմանէն եւ կարգեցի արս ընտրեալս եւ խրատեալս աւրինաւքն աստուծոյ եւ հաստատեցի կամակցութեամբ եղբարց. եԹէ ոք յառաջնորդաց ի յընծայից եկեղեցւոյս խորէ եւ զվաստակս բազմաց եւ տուրս հոգւոց իւրն համարի, որչափ աստուած աւրհնած է, այնչափ նզոված է. որ կաշառովք հայի, կրկին նզոված է։

Հառիճայ. Ա. Մխթ. 80. Ալիշ. Շիր. 159.

a. Ես Մարիամ Բագրատունի, դուստր արքային Կիւրիկէի… կանգնեցի զսիւնս զայս և ետու զիմ հայրենի սուրբ նշանն մեծածախ պահարանով ս. Աստուածածնիս, սկին աւրծաԹի և տաւնացոյց…

b. Ես Բօրինայ, նոյն արքայի դուստր, քոյր Մարիամայ, կանգնեցի զսիւնս զայս…

Ես Ռուսուդնայ՝ հօրաքոյր Թամարայ՝ մայր Թագուհեաց՝ *1185c.
զսխնս կանգնեցաք (sic)...

Ես Ռուսուդնայ՝ Նմին արքայի դուստր՝ քոյր Մարիամայ՝ d.
կանգնեցի զսխնս...

Սանահին. Գ.ու. ա. 17, 18.

...Ես Մարիամ դուստր Կիւրիկէի արքային՝ հանդերձ Ռու- e.
սուդնայիւ շինեցի զգաւիթս եւ ծածկեցի իմ արդեամբս. տուի
այգի. հատի զձորտութիւն... ծառզարդարին մեզ պատարագ լինի։

Հաղբատ. Գ.ու. ա. 75. Նշխ. 26.

Ի Թուականութեանս հայոց ոլզ. ին ի Թագաւորութեան վրաց *1187. ոլզ.
Թամարին՝ յամիրսպասալարութեան Զաքարէի եւ իւանէի...
որդւոց մեծին Սարգսի ես տէր Յովհաննէս՝ գաւառաւ Խաչի-
նեցի՝ եկեալ բնակեցայ ընդ հովանեաւ ս. Աստուածածնիս եւ
շինեցի զհիւրատունս... եւ ետու ի հիւրատունս զկուշանորի
այգին՝ Ուզունադոմուց կէսն, կանգնեցի զխաչս..[Գ.ու. ոզ=1157].

Սանահին. Գ.ու. ա. 29.

Սուրբ մեղսաքաւիչ պատարագ՝ որ ի սմա կատարի՝ Սահակա- a.
դխտոյ է՝ ծնողի Զաքարիայի եւ Յիւանէ՝ Թագաւորաց հայոց։

Անի. Ալշ. Շիր. 58.

Այս է հանգիստ Ապուղամրի մագիստրոսի։ b.
Այս է հանգիստ Ղա(րիփ)իս որդւոյ Ապուղամրի։ c.

Մարմաշէն. Ալշ. Շիր. 149.

...Ես Նանաէ, յազգէ Բագրատունեաց, դուստր մեծին Սարգ- d.
սի, քոյր Զաքարի եւ իւանէի կին Աբասայ Թագաւորին, որ
վախճանեցաւ ի Կեսարեայ ...կանգնեցի զխաչս, շինեցի զկա-
մուրջս...

Սանահին. Գ.ու. ա. 38.

Զաստուածաբնակ զայս խորանս և զխաչս տէրունական ես e.
Նանայն, դուստր մեծ հազարապետին Սարգսի, որդւոյ Զա-
քարէի, որդւոյ Աւագ Սարգսի, կանգնեցի ի վերայ Նորակերտ

*վարդապետիս Մարգարէի, որ սկիզբն յաշակերտութեան իւր որդիացաւ ինձ եւ առաւել եղեւ քան զծնունդ յորովայնի իմում. եւ իմ տեսեալ զյօժարութիւն սրտի նորա, անկայ ի շինութիւն պարսպին նորա առաջնորդութեամբ. եւ մինչ նա յայս բարւոյ գործոյս վերակացութեան էր, մերձեցաւ կատարած նորա եւ ի հող էջ մանկահասակ. եւ մեզ սուգ անմխիթար եղեւ փոխումն նորա։ Եւ ես Նանայս աղէխարշեալ ի գթոյ նորա, զայս գտի հնար սփոփանաց անձին իմոյ...*

*Յոհաննավանք.* Ղ. Ալ. 404.

*1175. *Ես Պետրոս վարդապետ կա(նգնեց)ի զն(շանս) ...աւիկն ...էն, զոր յառաջ տեսա հոգո·ակամբ ոիդ. Թուին եւ բանաւք...ց̇ եւ իջանել ամբ լուսեղէն յարեւելից սուրբ նշանն աստուծոյ եւ զկնի Տեառն (տ՞ըն)... հար ...զխաչէն ...մի ...հրաշ ...ին խաւարեցաւ արե(գակն)... ես եմ... ի Զաքարէ եւ... մեծին... որ զնոյն ձեւ եւ զկերպ ունեին. որ ...խաչին Քրիստոսի եւ... աւ երկիր... ծա... Հաստատանեաց, եւ ...շատութիւն Շա...ին ...եւ պար...ն... երկրպագուաց սուրբ ...ատեան Քրիստոսի...*

*Կոշ.* Մխ. Վ. Հնխ. Հյգ. II. 4.

*1181 — *1183 *Ի հայրապետութեան տ. Գրիգորիսի եւ ի Թագաւորութեան վրաց Գեորգէ եւ մերոյ իշխանին, ես հայր Պետրոս եւ եղբայր իմ, Յովսէփ, եւ Սարգիս կրաւնաւոր եւ միաբան ուխտիս հաստատեցաք Ստեփանոսի, Աղուանից կաթողիկոսի, ի տարին զՔրիստոս (պատարագել՝) ի տաւնի Առաքելոցն, Դաւթի, Պետրոսի, Յոհաննու ամէն եկեղեցիքս...*

*Կեչառուս.* Ղ. Ալ. 490.

*1198. *Եղեւ այս ի հայրապետութեան տ. Բարսղի և տէրութեան վանացս քրիստոսասէր պատրոնացն, Գրիգոր հէճպին եւ Սմբատայ եւ եղբարց իւրեանց եւ ի տէրութեան քաղաքիս եւ բոլոր գրկրիս մեծ հայոց Քրիստոսի մեծ զաւրականացս, Զաքարէի եւ Իւանէի, որոց հովանի լիցի սուրբ Երրորդութիւնն։*

*Տայլար.* Նմշ. Ղ. Ալ. 17.

a. *Ես հեճուպ Գրիգոր եւ Սմբատ եւ Իշխանս հաստատեցաք ի մեր սեփական ուխտս, որ ոչ պատրոն եւ ոչ ճորտ ի վանքն*

աղունձ աղան. եթէ ոք զգիրս զայս, պատրոն կամ հայր, լուծանէ, նզովի յաստուծոյ եւ յամենայն սրբոց։

Հոռոմոս. Սարգ. 146. Ն. մէշ. Տ. էր. 20.

Ես Գրիգոր, հեջուբ ամիր սպասալար Աւագին, որդի Սմբա- *1198b.
տայ որդւոյ մեծին Վախտանգայ, կողմնապետաց աշխարհին Արցախոյ, առեալ աթաբեգէ իւանէիս եւ իւրեան ազգի առաջնորդ կացոյց, զի ոչ ունէին զաւակ... խնդրեցի զայս եկեղեցի ինձ շիրիմ հանգստեան. Աւագն ինձ երետ և միաբանքս սահմանեցին ...պատարագել... Ով որ կարդայք, Աւագին երկար կեանք խնդրեցէք եւ Գրիգորոյ մեղաց թողութիւն...

Գօշայ վանք. Ղ. Ալ. տ. 139.

## ԺԳ. ԴԱՐ.

...Ես Զաքարէ, մանդատորթա խուցէս ամիր սպասալար հա- 1201. ոծ.
յոց եւ վրաց, որդի մեծի Սարգսի, գանձագին արարի զհռչակաւոր սուրբ ուխտս Հառիճայի յիւր բնական հայրէնատիրացն յաղագս կենդանութեան տեառն իմոյ, բարեպաշտ Թամար թագուհւոյ, եւ փրկութեան ինձ եւ հարազատ եղբաւր իմոյ, Յիվանէի, եւ զաւակաց մերոց, Շահնշահի եւ Աւագին, եւ ծնողաց մերոց. շինեցի ի սմա ամրոց եւ զկաթողիկէս բազում ծախիւք եւ զարդարեցի ամենայն սպասիւք եւ սրբութեամբ. եւ զիմ գեղն, որ էր մերձ ի սուրբ ուխտս, զՄողորիոն[1], ընծայեցի սուրբ Աստուածածնիս բոլոր իւր ամէն հաղահատովն՝[2] սարովն եւ ջրովն, զոր բնական լեալ է. եւ ետու ջաղաց մի ի Գետիկ, որ Դիւաղաց կոչի, ջաղաց մի յԱնի Գլիձորին եւ պարտէզ մի ի Ծաղկաձորին[3], այգի մի յԵրեւան եւ այգի մի ի Թալին. եւ զառաջին սահմանքն, որ բուն լեալ էր, հաստատեցի ի Սահմանախաչէ ի Հառիճա գետն[4] կոռ Մարգով, Գբերովն, Յամաք Ջորով, Ճինարին Հարով, Գոմցեց ձորովն, Արենաղբերով, հին Հառիճաով... նաև գրեցաւ կտակս հաստատ. թիւ ՈԾ. [այլ ընթերց. 1. Մոկորիսն. 2. հողահոտովն. 3. Ծաղկոցաձոր. 4. դէտն]։

Հառիճայ. Ն. Մէ. 62. Ն. մէշ. Տ. էր. 161. Տ. Կէ. 568.

1201a. ոծ. ՈԾ· ես Մխիթար, որդի Դըւալին, ետու ի սբ̃ ուխտս Բագնայր զիմ աշխատո... ի սուրբ Առաքելոց զուկակին...

Բագնայր. Սարգ. 180. Նշխ. Դիւ. 120.

b. Յորժամ Թուականն էր ոծ (1201) ...Պատրոնիկն Վասակ, Թոռն Կիւրիկեայ Թագաւորին, որդի Հասանայ, որդւոյ Սակռայ, տեառն Հաթերքոյ, Հանդաբերդոյ, Հաւքախաղացին, եղբայր Վախտանկայ, Նորին աթոռակալի, երբեր զխաչս եւ ոչ կարաց կանգնել... քան զի երթեալ եղեւ ի Գոլաշտեան եւ առ զնա յանաւրինաց... եւ բնակեցոյց անդ զորդին իւր, եւ ինքն Նահատակեցաւ ի վերայ Քրիստոնէից, եւ իջեալ լոյս ի վերայ, ի տեսութիւն բազմաց, եւ յետոյ ո̃ծ. Թուին կանգնեցին որդիք նորա, Խոյտան եւ Խաւ-չախն...

Խաթրայ վանք. Դաւթ. 598. Նշր. 196.

c. ՈԾ· կամաւն ա̃յ ես Խաչեղբայրս եւ իմ որդիս Աւետիսս... տուաք զմեր հայրենիքն զՄարանց մարգիկն[1] ի վանքս...

d. Ի ոծ. Թւիս շնորհիւն ա̃յ ես Գրիգոր, որդի Հասանայ, որդւոյ Իշխանին, ետու զիմ գանձագին գիւղն, զՇրգս[2], ի մեր սեպհական ուխտս... վասն արեւշատութեան որդւոյ իմոյ, ամիր Հասանա, եւ յիշատակի հոգւոյ իմոյ, և ամուսնոյ իմոյ խաթունին, յառաջնոր-դութեան Մխիթարայ...

e. Ի ոծ. Թւիս ի տէրութեան երկրիս Զաքարիայի ես Տիգրանս... հաւատարիմ իմ պարոնին Զաքարիաի... ետու զիմ ջաղացն, որ ի կորդո[3] շինեալ է ի Գլիձորին, հմնակից է Ներքի դեհն Գունի-ծանց[4]... (Ա· Մխ· 1. Մարգիկանգս. 2. Ջերդս. 3. Կողս. 4. Գոնի-ծանց).

Հոռոմոս. Սարգ. 151. Նշխ. Դիւ. 22-23.

f. ՈԾ· հայոց... ամիրութեան Լաշայի ի տէրութեան... խանին ես Հայրապետ, առաջնորդ սբ̃ ուխտիս, որ կոչի Պետրոսի վանս, շի-նեցի զսուրբ Աստուածածին եւ յուսով կարգեցի զծրագալոյցն բ̃. խորանն ինձ պատարագ առնել եւ ա̃. իմ եղբաւրն Շմաւոնին եւ... զամեն եկեղեցիս իմ ծնողացն ..

Ջոխտակ վանք. Նշր. 362.

*Յիշեա՛ Քրիստոս աստուած զՍարգսի հոգին եւ ողորմեա. Թվ. ոծ.* 1201g. ոծ.

*Նորագուս.* **Նմէշ. Սեւ.** 196.

*Քրիստոս ողորմի Վաչէի յիւրում գալստեան. Թ. ոծ։* h.

*Հաղբատ.* **Նշղն.** 39. **Լու. Նշգ. հնտ.** VII և VIII, 404.

*ՈՒ։ կանգնեցաւ տէրունականս...* i.

*Ես Առաքեալ, որդի Գրիգորի, ...ետու ի հայրենի գանձագին այգուն որ ի Գունդնանց զիմ բաժինն ի սուրբ Նշանն, շինեցի զԳաւիթս, կանգնեցի զխաչս տէրունական ի ժամանակի ծերութեան իմոյ... զմատնարկն շինեցի եւ զտակառպետոցն եւ լցի զմատնարկն ի գրատանս յետ անցման իմոյ. ես Սամուէլ, առաջնորդ սուրբ ուխտիս, ամենայն միաբանաւքս գրեցաք... զչորս եկեղեցիս, երկու աւր Խաչոշին, երկու աւր Առաքելին, ա. Գրիգորայ առնեն...*

*Հոռոմայր.* **Գաւ. տ.** 93.

*ՈՒ. ես Սարգիս եւ Զաքարէ, որդիք Յակոբայ, եւ Խալին, մայր մեր, շինեցաք զեկեղեցիս... ի հայրութեան Սամուէլի...* j.

*Հոռոմայր.* **Գաւ. տ.** 99.

*Ի Թուին ոծ. ես Թոմայ անարժան քահանայ կանգնեցի զխաչս բարեխաւս ...ինձ եւ ծնողաց իմոց եւ եղբարց. որք երկրպագէք՝ յիշեցէք ի Քրիստոս։* k.

*Հաղբատ.* **Նշղն.** 69.

*ՈՒ. Թուին ես Անանիաս, որդի սուրբ ուխտիս բարեխաւսութեամբ աւրն աղաւթ... երկրպագէք։* l.

*Արվեղու վանք.* **Նշյ.** 340.

*Թվ. ոծա. կանգնեցաւ խաչս ի բարեխաւսութիւն Պատրոն Ճարին։ Յիշեա Քրիստոս աստուած եւ ողորմեա.* 1202. ոծա.

*Երնջակ.* **Նմէշ. Սեւ.** 370.

1204. ոձգ. Թւ. ոձգ. շնորհիւն Քրիստոսի ես Զմրուխտ խաթունս... ետու սուրբ ուխտիս ի վանս Հոռոմոսի ի սուրբ Յովհաննէս ակն մի ջաղաց բոլոր ի կամրջի ձորին, որ Աբէլեանց կոչի, այրն իմ աստուածասէրն Սմբատ յետ կենդանութեան ինձ հայրենիք էր տուեալ. ես իմ կենդանութեանս սուրբ ուխտիս հայրենիք հաստատեցի յառաջնորդութեան տէր Բարսղի Ամիր երկաթոյ. եւ սպասաւորք սուրբ ուխտիս փոխարէն հատուցին մեզ յամենայն ամի պատարագել զՔրիստոս ԽԵ. աւր. ԺԵ. ինձ Խաթունիս, ԺԵ. առն իմոյ, Սմբատայ, Ժ. մաւրն իմոյ Խորիշահի եւ Ե. իւր հաւրն Քրդին... [Սարգս. Թ. ոձգ=1234].

Հոռոմոս. **Ա. Մխ. 38. Սարգ. 153. Ալիշ. Շիր. 24.**

a. Ի Թվիս ոձգ. ես Հայրապետս, որդի Վարդանայ, կանգնեցի զկէնսունակ, զկենսակիր, զկենդանատու նշանս, զայս կառուցեալ աջոյ անեղին աստուծոյ եւ բարձրացեալ բանիւ Որդւոյ միածնի եւ հաստատեալ շնորհաւք հոգւոյն սրբոյ ի բարեխաւսութիւն ինձ եւ ծնողաց իմոց եւ կենակցի իմոյ, Եղնկան, եւ Անդրոս...

Մանազկերտ. **Թոր. Ալշ. Է. 279.**

b. Ի Թուին ոձգ. շինեցաւ սուրբ Յարութիւն եւ կանգնեցաւ մատուռս բարեխաւսութեամբ վարդապետին Յովանիսի եւ եղբաւրն նորին Սարգսի յիշխանութեան մեծի Մարծպանայ եւ զաւակաց նորին, Ասլան բէգին եւ Գրիգորայ, եւ առաջնորդութեամբ Տիրացու վարդապետին...

Դսեղ. **Ջալ. Ա. 117.**

c. Ի ոձգ. կամաւ բարերարին աստուծոյ ես Վարդըմբէլ[1], որ նորոգեցի ի յԵրեւան զՄեղիտոնոյ էգոյնչարէքն եւ ետու ի սուրբ Գրիգորս. [Ալիշ. 1. ըմբէլ].

Կեչառուս. **Շահխ. 490. Ալիշ. Այր. 267.**

d. ՈՃԳ. Թվին ես տէր Յովհաննէս շինեցի զեկեղեցիս եւ ժողովեցի զխաչս եւ զգիրս, որ ի սմա, եւ արկի զՋոթացն այգին եւ զՄատաղիսն[1] բազում աշխատութեամբ, եւ ետու զվանքս իւր ամէն սահմանաւն իմ եղբաւրս[2] Հասանայ եւ որդեանցն[3] Հաթերքու

*տեառն միջնորդութեամբ... (Ջալ. 1. արկի զայգին եւ զմատնարքս. 2. իմ աղբերաւ 3. իւր որդւոյն).*

*Խաթրայ վանք.* Գաւ. Է. 230. Նշյ. 194.

*Այս իմ գիր է Հասանայ, որ երբ իմ աղբերս զեկեղեցիս շի-* 1204e. ռձգ.
*նեաց ու զվանքս ինձ երետ, ես զԽնձորայ բակս իւր սահմանով ի յեկեղեցիս տուի...*

*Խաթրայ վանք.* Նշյ. 194.

*Ի Թուին ռձե. յաշխարհակալ տէրութեան Զաքարէին եւ* 1206. ռձե.
*Իւանէի, յառաջնորդութեան Ստեփանոսի ես Խալաթ, որդի Սմբատայ, իմ գեաւղն, Քանաքեռ, Սկանդարանց հողն գնեցի եւ ի Հաղարծինս ետու վասն իմ հոգւոյն եւ երկարութեան կենաց Շահնշահի եւ Աւագի...*

*Հաղարծին.* Ղեւ. 604. Նշյ. 366.

*ՈԾԵ. կամաւ բարերարին այ ես Գիշուկս, որդի Գրիգորո, մի-* a.
*աբանեցա սուրբ ուխտիս եւ ընծաեցի երկու արտ... եւ սոքա, հայր Սիմեւոն ...հատուցին երեք աւր պատարագ... ա. արտ ի Տափիս, ա. ի Մաննեխուտին։*

*Բագնայր.* Սարգ. 181. Նկշ. Ղեւ. 120.

*Ի ռձե. Թւիս ես Զաքարիայ Շահանշահ, որդի Սարգսի, զաւ-* b.
*րապետ հայոց եւ վրաց, քակեցի զջաղացն, որ յԱկանս հակառակ ջրիս շինած էր, եւ վերստին հաստատեցի զջուրս ի վանքս Հոռոմոսի վասն արեւշատութեան ինձ եւ եղբաւր իմոյ Իւանէի ..*

*Հոռոմոս.* Սարգ. 149.

*Ի Թու. ռձե և ի Թագաւորութեան Լաշային, յամիր սպասա-* e.
*լարութեանն Զաքարէի եւ որդւոյ իւրոյ Շանշահի եւ եղբաւր իւրոյ Յովանեսի հայր Սամուէլ եւ այլ միաբանքս շինեցաք զեկեղեցիս վասն յերկար կենդանութեան պատրոնացս...*

*Մարմէտ.* Նկշ. Նշր. 62.

*Ի Թուին ռձզ. կանգնեցաւ նշանս տէրունական ի վերայ* 1207. ռձզ.
*հանգստարանի պատուական քահանային Գրիգորոյ. որք երկրպագէք, յիշեցէք ի Քրիստոս։*

*Հաղբատ.* Գաւ. Ժ. 77. Նշըն. 62.

1207 a. ոծզ. Այս մեր գիր է Դաւթայ եւ այլ միաբանացս, որ եւ գրեցաք ամիր Սարգսի, որդւոյն Հասանայ, ի տարումն երկու ժամ ետուն ի Բարսղի հայրապետին...

b. Ես Վաչէ Անբերդցի, իշխանաց իշխան, ետու (յ)եկեղեցիս դահեկան ի շինութեան գաւթիս նորոգման (ի) Գրիգոր վարդապետն (յ)առաջնորդութեան հաւր Դաւթի...

c. Ի Թուին ո՞ծզ. ես Գրիգոր վարդապետ, որդի Աբաս իշխանի... միաբանեցայ յԱստուածածնիս եւ ետու պատուական գրեանք եւ խաչ մասամբ յառաջնորդութեամբ (sic) հաւր Դաւթի...

Մակարայ վանք. Գաւ. ա. 149.

d. Ես քահանայապետս եւ դասապետս միաբանեցաք սուրբ ուխտիս... աշտարա..· այուն դրաւք զընծանս շինեցաք եւ այլ ինչս տուաք. . ի Թուիս ոծզ։

(Տէլիլէր) Ջորուտ. Ղ. ակ. 483.

e. Թվ. ոծզ... ութեամբ ա՞յ ես Պարսամաւ... որդի Հասանայ... միաբանեցա սուրբ ուխտիս եւ ետու զիմ հայրենի ա... կոչի վասն յիշատակի եղբաւրն իմո խուրտ...

Արջոյառիճ (Ալաճա). Սուքի. 190. Ն. Լիշ. Ղ. Եր. 124.

f. Ի ոծզ Թվիս Նորոգեցաւ սուրբ Աստուածածինս, եւ հաստատեցաք առաջնորդ սուրբ ուխտիս տէր Գրիգոր. Եղիազար, Վարդա, Յոհան, Հար, Ծերթա, Աստուածատ, Ըռստակ, Սարգիս, Փա. եւ այլ միաբանացս, որ հաստատեցաք զուխտ միաբանութեան հոգւոց մերոց...

Աստուածընկալ. Ղ. ակ. 464. Ն. Լիշ. Ն. Այ, 255.

g. Ոծզ. ողորմութեամբն աստուծոյ ես Աւագ տիկին, դուստր Գորգկան, միաբանեցա սուրբ ուխտիս, եւ զիմ հայրենի կէս ակն ձիթահանքն, որ ի յիմ ծնողացն ի պսակի ներքեւ ինձ բաժինք էր հասել, ետու ի սուր Աստուածածինս. եւ հայր Սիմէաւն միաբանաւքն փոխարէն հատուցին մեզ յամենայն ամի հինգ աւր պատարագ, զգ. աւրն Աւագ տիկնա. եւ զմինն Գորգկանն, եւ զմէնկ, Թաճերոյն. եթէ ոք զյիշատակս մեր խափանէ, մեր մեղացն համար տացեն առաջի Քրիստոսի։ Մանասէ գրիչ։

Արջոյառիճ (Ալաճա). Ն. Լիշ. Ղ. Եր. 122.

Ի Թվ. ոծզ. ես Մայրացեալս շինեցի զխորանս ի հալալ արդե- 1207ի. ոծզ.
անց իմոց եւ առաջնորդք սորա ի տուն ի տարումն... ժամ տեառն-
ընդառաջին. խափանողքն դատին ի տեառնէ:

Ջոխտակ վանք. Այր. 362.

Ի ոծէ թւ. շնորհիւն Քի ...ես մանդատորթա խուցէս ամիր- 1208. ոծէ.
սպասալար Շահնշահ Զաքարիա շինեցի զարձանս եւ զպարիսպս
վասն յիշատակի մեզ եւ ծնողաց մերոց:

Անի. Սարգ. 112. Ալիշ. Շիր. 43.

Ի Թուիս ոծէ ...ես Մխիթար... միաբանեցա եկեղեցւոյս (ս. a.
Աստուածածին), եւ զիմ հոգեպահուստ ետու սոցա. եւ սպասաւ-
որք խոստացան...

Տամճլու. Շ. կր. 471.

Ի թւ ոծէ. շնորհիւն այ ի տէրութեան մանդատորթա խուցէս... b.
սպասալար Շահնշահի Զաքարի ես Սարգիս...

Անի. Սարգ. 111. Ալիշ. Շիր. 41.

Թուական ոծէ. ես Գ...ոս աշակերտ Մարգարէի քահանա... c.
միայնաւորի կանգնեցի զխաչս պահապան գերեզմանի սորա եւ
եղբաւր իմում Առաքելին. աղաչեմ յիշել... զվարպետս զՊ ղ և
զԱնդրէաս եւ զծնողսն իմ և զտէր Առաքելն, որ նահատակեցաւ
ի Կեչրոր քաղաքի զանազան տանջանաւք:

Խծկօնք. Սարգ. 212. Ալիշ. Շիր. 129.

ՈԾԸ. ի յամս աստուածապատիւ տն Սարգսի, որդոյ Ապի- 1209. ոծը.
րատին, ես Խաչերեսս, որդի Աբրահամու, լաւեցի, ետու զիմ
գանձագին եւթն կուղպակն ի Շարիվեցի վերեւն եւ մին ի ներքն...
զՔթին ընդդէմ, եւ երեք տուն ի ներքսեւն, ի սուրբ Աստու-
ածածինս ի ձեռս հաւր Սիմեւոնի եւ սուրբ եղբայրութեանս,
եւ զայգին, որ Մարմետ. եւ սոքա փոխարէն հատուցին ինձ ի.
աւր ժամ ը. ինձ, ե. Աբրահամու. գ. Դինարկանն, բ. Հրանու-
շին, բ. արքայութեան ու հաս:

Ես Մամխաթունս, դուստր Խաչերեսին, ետու զիմ կուղպակն,
որ ի փողոցկտերն է ի բաղընոց...

Բագնայր. Սարգ. 179. Ալիշ. Շիր. 117.

1209a. ոծր. Թվ. ոՃր. յաշխահակալութեան… մեծ շահանշահաց Զաքարէի եւ իւանէի, որդւոց Սարգսի, յեպիսկոպոսութեան Վրթանեսի ես մեղուցեալ… Վահանս… շինեցի իշխանավանից մեծ եկեղեցին յանուն սուրբ Աստուածածնին եւ զայս Աստուածածինս նորոգեցի սալով, ով որ ի բնէ չէր սալած…

Բջնի. Հ. ակ. 484.

b. Յառաջնորդութեան տէր Յովանիսի եւ ի տէրութեան Զաքարէի եւ իւանէի ես Յովսէփ… կանգնեցաք զխաչս որք երկրպագէք, յիշեցէք ի Քրիստոս, եւս առաւել զՅովհաննէս. ի Թուիս ոծր։

Հաղբատ. Նշխ. 70.

1210. ոծթ. ՈԾԹ. ի յամս ածարեալ և մեծարգո… տն Սարգսի վերադիտողի ի մայրաքաղաքին Անո եւ ի պետական իշխանութեան Շահնշահ Զաքարիաի ես Պարսիմո որդի Հասանայ, ուխս մեծանուն գեաղջն Աւշականո… ետու զիմ հայրենի զայգին, զՎարդենցնորքն, ի սուրբ Աստուածածինս… ե. պատարագ Պարսիմոի, ե. Խուրթին, դ. Սեդաին…

a. Ես Մրուան միաբանեցա սրբոցս հետ իմ պարոնին…

b. Ես Սերոբս, որդի Ռատին, երեւանեցի. ետու զիմ այգին, որ Ջորդուանն է…

Բագնայր. Ս. Ք. 180. Ն. Ժ. Հ. Եր. 117.

c. …Յամս աւծելոյ աստուծոյ Թագաւորաց Թագաւորին Գէորգէ որդւոյ մեծ Թագաւորին Թամարին, յոյոյ ժամանակս ետ աստուած ի ձեռս երկու հարազատացս Զաքարէի եւ իւանէի զսեփական դղեակն մեր զԲերդ, զշինեալն ի նախնեաց մերոց եւ զայլ բազում ամրոցս… ես մանդատորթա խուցէս ամիր սպասալար Շահնշահ Զաքարիա, որդի… Սարգսի, ետու ի սուրբ ուխտս Հաղբատայ զիմ հայրենի, որ Աշոցք, զՀալալաշէն եւ զվ… եւ զի այս գեղերս հեռի էին ի Հաղբատայ, փոխեցի եւ ետու հայրենիք Դաւթի, որդւոյ Շոթորկայ եւ առի երկու գեղին փոխան զՀաղբատ հայրենիք եւ ընծայ սուրբ Նշանին Հաղբատայ ամենայն սահմանաւք, ոնց բնական եղեալ է հողով եւ ջրով, խոտամարգերով, մայրիւք եւ ջաղացովք, գոմամարգերով, լերամբ եւ դաշտով վասն… կենդանութեան Թագաւորին եւ արեւշատու-

Թեան որդւոյ իմոյ Շահնշահի եւ եղբաւր իմոյ իւանէի եւ որդւոյ իւրոյ Աւագին եւ յիշատակ մեզ եւ ծնողաց մերոց։ Եւ է այս գեղ ազատ յամենայն հարկէ ի պարոնաց, ի ձեռնաւորաց, ի գիւղականաց ...զաւագ խորանի պատարագն անխափան յիմ Զաքարիայի անուն մատուցանեն յայսմհետէ. որ Թիւ հայոց է ոծթ. ...Եթէ ...որ զմեր յիշատակն խափանել ջանայ, յիմոց կամ յաւտարաց, մեծ կամ փոքր, վրաց կամ հայոց, ի Լաւռէտէրանց յեպիսկոպոսաց, ի քահանայից կամ յաշխարհականաց արանց, կամ զՀաղբատս յետ առնու... Նզովի...

Հաղբատ. Նշխ. 28.

ՈԾԹ. Թվիս կանգնեցաւ խաչս ի բարեխաւսութիւն տիկնոջն Հռիփսիմեայ։ 1210 ա. ոծթ.

Մանազկերտ. Թոր. Մայ. է 279.

Ի Թուին ոկ. Նորոգեցաւ եկեղեցիս ձեռամբ տէր Յովհաննիսի եւ միաբան եղբարցս... 1211. ոկ.

Հաղբատ. Նշխ. 34. Գաւ. ա. 63.

Ի Թուին հ. ոկ. ...ես Նաշմադինս[1], որդի Սմբատայ, Թոռն Ուքանայ, եւ որդիք իմ, Սմբատ եւ Վահրամ, յուսացաք ի սուրբ Նշանն Հաղբատայ և եդաք ի տեղւոջ աստ զգերեզմանս մեր եւ զոր Թագաւորաց Թագաւորն Գէորգի եւ դուստրն նորա Թամար վասն շատ ծառայութեան զՄոփի[2] սիգելով մեզ էին տուեալ եւ որ անդ զԱրեւունքն շինական եւ զկեչեւնուտի[3] այգին վասն Զաքարիայի Շահնշահին եւ իվանէի արեւշատութեան եւ մեր մեղաց Թողութեան։ Եւ տէր Յովհաննէս եւ միաբանքս ետուն մեզ զՀոգւոյ գալստեան պատարագն, եւ զայն աւրն, որ մեզ տուած է, ի մեր արդեանց սեղան դնեն... (Ջալ. 1. Նաջմադինս. 2. զծոփ ի սիգել. 3. զՀեչեւին ուտեն). a.

Հաղբատ. Նշխ. 57. Գաւ. ա. 66.

Թվին ոկ. Նորոգեցաւ եկեղեցիս առաջնորդութեամբ Յովասափի եւ Անարայիսի. մեծ սպարապետ Բուբայ, տէր երկրիս, ետ առու ինչք զայգին Ոսկեբակայ, Առուքանակ, որ է առու Քանաքեռու, ե. ակն ջաղացին Աչիկ. տէր Վանական իւր Խալթի ձագն իւր բերդաժողովուրդն վանիցս կարգեցաք զՅայտնութեան Ծրա- b.

գալոյցն, Ջատկի ժամն կատային տան. մեք տվաք վախմ. ով վախմ հանէ, դատի ի Տեառնէ։

Հայր Օհաննավանք. Գուղ. Է. 180. Նշէշ. Սէոհ. 40.

1211c. ոկ. Ոկ. Թվիս և յիշխանութեան Սէվդնին ես Մարտիրոս, որդի վարդանայ, կանգնեցի վէմ եւ արձան պատուական ընտրեալ նշան յաղթութեան նկարեալ արեամբն Յիսուսի Քրիստոսի ի բարեխաւսութիւն ինձ եւ ծնողաց իմոց եւ կենակցի իմ և անդրանկին իմոյ...

Մանազկերտ. Թոր. Նշէ. Է. 279.

d. Ոկ. Թվ. ես Սարգիս անպիտան քահանայ կանկնեցի զսուրբ նշան Քրիստոսի ի բարեխաւսութիւն ինձ եւ ծնողաց իմոց եւ շնորհազարդ աշակերտի իմոյ Աշոտոյ...

Հայոցթառ. Մանկ. Նշրէւ. 50.

e. Մարծպանայ որդոյ Սարգսի Համազասպեանց, որ տուեալ է իւրեանց սարն յԱստուածածնիս ի Թւին ոկ։

f. Ոկ. ես Վաչէ, ծառայ Զաքարէի, շինեցի զխորանս եւ ետու զիմ ոսկետուփ աւետարանն եւ զսուրբ նշանն եւ զգործ մեծածախիւք ի սուրբ Աստուածածինս. առաջնորդ սուրբ ուխտիս հայր վարդան, վարդապետ Գրիգոր միաբանաւք սահմանեցաք... պատարագել... մինն վաչէի եւ մինն ամուսնոյն Մամախաթունին...

Սանահին. Գուղ. Ա. 24.

g. Ի ոկ. Թվ. ի ժամանակս բարեպաշտ իշխանաց մերոց, Զաքարէի եւ Իւանէի, ես Մխիթար Փէճարենց, որդի Դաւթի... հրամանաւ մեծին Իւանէի եղէ առաջնորդ մեծահռչակ գեաւղին Նորատուաց. կամ եղեւ կանգնել զխաչս...

Նորադուս. Տաճկ. 533. Նշէշ. Սէոհ. 47.

h. Ոկ. ի յամս... տէր Սարգսի, որդոյ Ապիրատին, եւ յառաջնորդութեան... ես Արտաշիր, Աւշականայ ռայիս, ետու զիմ գանձագին այգին, որ Աշոտոնց կոչի, ի սուրբ Աստուածածինս... ը. աւր պատարագ՝ գ. Արտաշրին, բ. Աբասա, բ. Սսին, ա. Գնտուտին։

Բագնայր. Սարգ. 181.

i. Կամաւն այ ի ոկ. Թուաբերութեանս հաոց ես Զաքարէ, ամիր սպասալար հաոց եւ վրաց, որդի Սարգսի ազատեցի զսուրբ ուխտս

*զայս խմով արեամբս ի յայլազգեաց եւ ետու ի սուրբ Սարգիս զՎասկափող, Մշկաղբին, Վրվին եւ այգի մի ի Բագրան եւ շինական մի ի գիւղս յիշատակ հոգոյ իմոյ եւ յարեւշատութիւն հարազատ որդոյ իմոյ, Շահնշահի, եւ եղբաւր իմոյ, Իւանէի. հայր Յովհաննէս եւ այլ միաբանքս հաստատեցին զսուրբ Սարգսի զաւագ բեմն անխափան պատարագ առնել ինձ միջնորդութեամբ Դաթի, որդւոյ Շոթըռկայ...*

Խծկօնք. Սարգ. 209. Ն. Ժղ. Հ. եր. 127.

*Ես Մամախաթուն ամուսին Վաչէի, դուստ...* 1211j. ռկ.

Բաբաքիշի. Հ. ախ. 478.

*Ռ։ Կ։ ի Թիան* (sic) *հայոց գրեցաւ. ես հայր Առաքեալս, որ էկի* k.
*իմ ազգայկանաւք ի տապանայտունս վերըստին նորոգեցաք զհնացեալ սբ. ուխտս ողորմութեամբ ամիր սպասալար Զաքարէի, որ էառ զԲագարան։ Ես Դաւիթ, որդի Շոթոկայ, ետու զԱպպէ Խարփին սաղին հողու զկարմնջխելին Ներքի Ջաղացն ի տապընտան սբ. Կաթողիկէ վասն ամիր սպասալար Զաքարէի հոգոյն հաւր Շահնշահի։ Հայրս Վարդան եւ Տրդատ փակկալ եւ այլ միայբանքս հաստատեցաք զաւագ խորանն որ պատարագ կատարին անխափան։ Հաստատեցաւ գիրս ի պարոնութեանս Գրիգորոյ, ով որ...*

Բագարան. Սարգ. 203. Ն. Ժղ. Ն. շր. 67.

*Թուիս ռկ. ես Զաքարիա ամիր սպասալար հայոց եւ վրաց աւգ-* l.
*նութեամբն Քրիստոսի առի զաշխար[հ]ս ի տաճկաց եւ ազատ արարի... պու... (աւ) անիս յամէն... (հար) կէ. որ խափանէ... Նզովեալ եղիցի...*

Փարպի. Մխ. Վ. Հանդ. հյգ. II. 5.

*Ի Թվին հայոց ռկ. ի Թագաւորութեան Աղին ի պարոնութեան* m.
*Իւանէին ես Քաջաջաւրս շինեցի զկամուրջս, կանգնեցի զխաչս։*

Նորադուս. Գ. ալ. Է. 128. Ն. Ժղ. Սե. 47.

*Ի ռկա Թուին ես Խորիշահ, ամուսին Վախթանկայ, տէր Խա-* 1212. ռկա.
*չենոյ, դուստր մեծին Սարգսի, քոյր Զաքարեայ եւ Իւանոյ, վերստին շինեցի զեկեղեցիս Մեծարանից...*

Մեծարանից կամ Յակոբայվանք. Հ. կե. 608. Ն. շյ. 171.

1212a. ոկա. Ի ոկա. զաւրութեամբն Քի ես մանդատորթա խուցէս ամիր սպասալար Շահնշահի Զաքարիա շինեցի զարձանս...

Անի. Սարգ. 111.

1213. ոկբ. Ի ոկբ. Թու. կամաւն աստուծոյ ես Վաչէ, որդի Սարգսի, որդւո Վաչուտի, եւ ամուսին իմ, Մամախաթուն, եւ որդիք իմ, Քորդս եւ Վաչուտ, միաբանեցաք ի սուրբ ուխտս, Կեչառուս, եւ տուաք ի գանձագին գեղն մեր, Շէնդաւիթ այգի... սպասք եկեղեցոյ, եւ տէր Գրիգոր...

Կեչառուս. Հանկ. 490.

a. Ի Թուիս ոկբ. կամաւքն այ ես Տիգրան... շինեցի հալալ ընչիւք իմով զաշտիճաններս մեծափառ սրբոյ կաթուղիկէիս, զոր ի բազում ամաց հետէ խարխալեալ էր, եւ ետու նուէրք ի սուրբ կաթուղիկէս զիմ գանձագին կուղպակն, որ ի կատանոցին է. ետու երկու տաւնական եւ սուրբ Գրիգոր մին եւ երկու սկի արծաթիք աւագ խորանին...

Անի. Սարգ. 118.

b. Ի Թուիս ոկբ. շնորհիւն քի ես Տիգրան, հաւատարիմ ծառայ մանդատորթա խուցէս ամիր սպասալար Շահնշահ Զաքարիայի... տեսի զպանդխտութիւն սուրբ ուխտիս Խծկաւնից եւ Թափուր յամենայն ընչից եւ վերստին նորոգեցի ամենայն պիտոյիւք... ետու զիմ գանձագին ակն մի ձիթահանին, որ յԱնի է, եւ այգի մի ի Մարմէտ է, որ Միջնայգի կոչի, յառաջնորդութեան հայր Յովհաննիսի...

Խծկօնք. Սարգ. 212.

c. Ի Թվ. ոկբ. շնորհիւ աստուծոյ ես Յովհաննէս քահանայ, որդի Հոռմեանց Կոստանդին քահանայի, ...միաբանեցա սուրբ ուխտիս եւ գանձագին արարի եւ ընծայեցի յԱրջու Առճի ի սուրբ Աստուածածինս ի ձեռն տէր Գրիգորի, որդոյ Ապուղամրի, եւ փոխարէն ինձ տուեցին յամէն ամի խ. աւր ժամ անխափան, ի. ինձ, ե. Սիսվարդին, դ. Խաչերեսին... բ. Միխայլին, ա. Կատային...

Արջոյ Առիճ. Նուէր. Հ. եր. 122.

…Ես Յոհան գրասէր եւ Վախտանգս կանգնեցաք զխաչս ի 1213d. ոկբ.
տապանի որդւոյ իմոյ Գրիգորի… Թւին ոկբ. էր։ (տ. և 1218b)։

Վաղահաս. Ա̃ըց. 192.

Ի Թուիս ոկբ. ողորմութեամբն… ես Արդլմսեհ կրաւնականս e.
Կոնդերս դարբին տուաք զսա երկու դուռն տներն ի սբ̃ ուխտս
Խծկաւնից, եւ սոքա հաստատեցին զմեծ շաբաթն պատարագ՝
զմինն Իգնատիոսի, մին Յոհանիսի, մին Հաւրտիկն եւ մին Կոն-
դերոյն…

Խծկօնք. Ա̃լիշ. Ա̃յր. 113.

Ի Թուին ոկբ. ես… Քահանայ եւ եղբարք իմ կանգնեցաք f.
զսուրբ նշանս բարեխաւս յահեղ աւուրն մեր ծնողի…

Մաստարայ. Ա̃լիշ. Ա̃յր. 186.

ՈԿԲ. …ես Խնծորիկս միաբանեցա սուրբ ուխտին Տեղերու եւ g.
ետու յԱռահ զիմ այգին ի Թամիր եւ յետ իմ մահուան այլ զինչ
լինի եւ սոքա ետուն ի տարին Բ̃. աւր պատարագ ի Խնծորկնի
սուրբ… անէ։

Տեղեր. Մխ. Վ. Հոնդ. Հյգ. II. 6.

…Թվ. ոկբ. շնորհիւն… մեք նուաստ աշակերտք Սեթայ և h.
Սիմէոնի, Սոսթանէս եւ Մաթէոս եւ Գրիգորէս, շինեցաք զսուրբ
Կարապետս ի վերայ շիրմաց սոցա. եւ առաջնորդութեամբ սուրբ
ուխտիս սահմանեցին ի ճրագալոյցն վասն հոգւոց նոցա եւ այլ ննջե-
եցելոց, որ յայսմ հանգստարանի։

Հայոցթառ. Մանկ. Այրէւ 52. Ալիշ. Այր. 356.

ՈԿԳ. …ես Վասակ, որդի Սմբատայ, ետու յԱստուածածինս իմ 1214. ոկգ.
ամուսնոյն հոգւոյն փայտին ի Բերդիկ զՏիկնաքարայ այգին եւ զփոքր
այգին, զԳաբռանանք շինականացս, Պստի Ջաբէսլանանց հողն…
ընկալաք մեք առաջնորդ սուրբ ուխտիս Փիլիպպոս հայր եւ Գրի-
գոր վարդապետ…

Սանահին. Գաւ. տ. 21.

Թուին ոկգ. ես Աբրահամ վարդապետ, աշակերտ Աստուա- a.
ծածնիս, ետու… զիմ զԹագաւորական եւ զտէրունական սուրբ

*նշանս մեծածախ պաճարանով եւ գին մառանաւքն, որ բազում աշխատութեամբ շինեցի, ի գրատունս. ընկալայ ես Գրիգոր վարդապետ, առաջնորդ Սանահնի, եւ միաբանքս հաստատեցաք...*

*Սանահին.* Գ. ու. ա. 33.

1214b. ոկգ. *Ի տէրութեան... Թագաւորին վրաց Լաշային, եւ Շահանշահի եւ որդւոյ նորա, Զաքարիայի, ես Պռաւշ, որդի Վասակա, յազգէն Խաղբակա, գանձագին արարի ի տէրանց աշխարհիս զմեծահռչակն Այրիվանս լերամբ եւ դաշտաւ եւ ամենայն կազմութեամբ, որ կայր ի սմա. փորեցի՝ ի վիմէ տուն աստուծոյ յիշատակ ինձ եւ որդեաց իմոց եւ ամուսնին իմո Խութլուխաթունին (այլ գրով) իմովքն զամէն տուն ի դուռն սուրբ Գեղարդին վախմ։*

*Այրիվանք.* Տ. կւ. 573.

c. *...Ես Արզու խաթուն... դուստր մեծի իշխանաց իշխանին, Քրդին, եւ ամուսին վախտանկա Թագաւորազնոյ տեառն Հաթերքոյ եւ ամենայն վերին Խաչենոյ... շինեցի զկաթուղիկէս ի տեղւոջ հանգստարանի առն իմոյ եւ զաւակաց իմոց, Հասանայ, անդրանկին իմոյ, եւ Գրիգորի, որ ի տէր կէսաւրեայ վաղճանեցաւ. զի վասն մեղաց իմոց խրատեաց զիս աստուած... անդրանիկն իմ, Հասան, սպանաւ ի Թուրքաց պատերազմին վասն քրիստոնէական հաւատոյս, եւ զկնի երից ամաց զկրտսեր որդին իմ, զԳրիգորն ի տէր կոչեցաւ... Այլ զի ի կենդանութեան իւրեանց յոյս ի մտի եդեալ շինել եկեղեցի յայսմ տեղւոջ, եւ ոչ ժամանեցին... եւ ինձ աւանդեցին անդարձիւ կատարել... կատարեցաւ ի Թուականութեանս հայոց ոկգ...*

*Խութայ վանք.* Տ. կւ. 597. Ն. ւյ. 204.

d. *Ի Թիւ ոկգ. կամաւն աստուծոյ մեք Հառիճեցիքս, հայր Պետրոս եւ այլ միաբան եղբարք հաստատեցաք... եթէ հայր ոք փոխի առ Քրիստոս, գիշերապաշտաւն եւ երեք քառասունք, եւ թէ երէց կամ կուսակրաւն, երեք քառասունք, ապաշխարողի՝ երկու, ի մարդն մէկ աւր ժամ հաւր և ամէն եղբարց...*

*Հառիճայ.* Տ. կւ. 568.

e. *Յանուն աստուծոյ ոկգ. Թուականիս. ես Դաւիթ, որդի Գրիգորոյ, զաւրավար ամիր սպասալարին Զաքարիայի, տեսի զպայ-*

